

60 տարի՝
ԼԵՆԻՆԻ
անունով

ISSN 6134—5257

# ՊԻՈՆԵՐ

1984 5

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ

## №: 5 ● 1984



Շապիկի առաջին էջը՝
ՄԻՀՐԱՆ ՔԵՇՕՂԼՅԱՆԻ



## Մայիս

Ժպտա՛ մեզ, մայի՛ս, իմ ուրա՞խ մայիս,
Նայի՛ր, վարդեր եմ ահա նկարում
Պարտեզների մեջ կանաչ ու խնդուն
Ու թերթիկներին՝ թիթեռներ սիրուն:

Վարդի բուրմունքո՛վ իմ շուրջը լցրու,
Արևի շողով գգվի՛ր ամենքին,
Թող կյանքը լցվի հյութով կենսատու,
Եվ բնությունը փթթի կրկին:

Ժպտա՛ մեզ, մայի՛ս, դու՝ սիրո ամիս,
Եվ խաղաղությո՛ւն սփռիր ամեն կողմ,
Քո ցնծությունո՛վ շուրջն իմ ողողիր,
Մեր սիրտն ու հոգին լցրու քո երգո՛վ:

ԱՆՆԱ ՄԱՐԳԱՐՅԱՆ
Մասիսի շրջան
Մարմարաշեն գյուղի դպրոց



## Երգ հորս մասին

Հա՛յր իմ, ձեռքդ երբ քնքշորեն
Դնում ես լուռ գլխիս վրա,
Արթնանում է իմ սրտի մեջ
Ծիածանը վստահության:

Հա՛յր իմ բարի,
Հսկաների հետ եմ միշտ քեզ
Համեմատում անկեղծորեն
Եվ, հավատա՛, տարբերություն
Չեմ գտնում, չէ՛:
Քո մեծ, ազնիվ էության մեջ
Իմ ծիծաղն է արձագանքում
Եվ ապահով, հանգիստ եմ ես...
Հա՛յր իմ բարի,
Ամբողջ սրտով անմնացորդ,
Սիրում եմ քեզ:

ԼԱԼԱ ԲԵՅԲՈՒԹՅԱՆ
Մարտունու շրջ., գ. Մադինա



## Տասներորդցիներս

Մեր մեջ են ապրում երազանքները
ամենաշքեղ,
Զնգում են նրանք,
Ղողանջում հուզիչ
Եվ որպես կարոտ ծիածանավառ,
Որպես անրջանք,
Կանչում են անհինջ,
Կանչում են, կանչում,
Որպես առավոտ,
Որպես իրիկուն:
Մեր սրտերի մեջ սերն է ալիքվում
արևաշաղախ,
Ապրում ենք երգով հայրենի հողի,
Կյանքին, ամենքին նայում ենք շիտակ,
Մեզ հարազատ են շռինդ ու շառաչ,
Մենք ապագայի լույսերն ենք վառում
Եվ անհոգ ապրում այս արևի տակ:

ՍԱՐԱՋՅԱՆ ԼԱՈՒՐԱ
ք. Լենինական, Ալ. Շիրվանզադեի
անվան № 1 դպր., 10-րդ դ.



ԱՐԻՆԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ
ԼՂԻՄ, Շուշիի շրջ., գ. Մեծ Ղաչաղշյա
8-րդ դաս.

ԼՅՈՒԴՄԻԼԱ ԹԱԹՈՅԱՆ
Մարտունու շրջ., գ. Մաղինա







ՍԵՐՈ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆ

# «Նու-բ» անունով ձին

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Ծանր օրեր էին: Մեր զորքերը ետ էին նահանջում: Զինվորները հոգնել էին երկար քայլելուց և օրը ցերեկով կանգ էին առել անտառի բացատում մի փոքր հանգըստանալու, ճաշելու...

Ես հսկում էի վաշտի կարճ դադարը: Զենքը ձեռքիս շրջում էի, երբ հանկարծ թփուտների միջից ձիու խրխնջոց լսեցի: Զեկուցեցի հրամանատարին: Միասին շտապեցինք թփուտների կողմը: Քիչ հեռու մեր առաջ բացվեց մի ահավոր տեսարան: Մի զինվոր էր ընկած, կապտավուն մի ձի խոնարհվել էր նրա վրա, ասես լաց էր լինում: Մեզ տեսնելով ձին վիզը ծռեց, նայեց ու գլուխը տարուբերեց, թվաց, թե օգնություն է խնդրում:

Հրամանատարը շրջեց դիակը:

— Ինքնաթիռից են կրակել,— ասաց

նա,— գնդակը ձախ ուսից մտել է, դուրս է եկել աջ կողքից...

Նույն տեղն էլ փոս փորեցինք, ծողին ծանձնեցինք զինվորի մարմինը, սաղավարտը դրինք շիրմաթմբին: Ձին ոչ մի շարժում չարավ, մնաց նույն տեղում մեխված, միայն նրա խոշոր աչքերից ուլունքուլունք արցունք էր թափվում: Ծինելիս գրպանից ծանեցի երկու կտոր շաքար, մոտեցրի ձիուն, ծոտոտեց, բայց չվերցրեց: Երկրորդ անգամ մոտեցրի, չվերցրեց: Շոյեցի ճակատը և քաշեցի սանձը: Ձին գլուխը բարձրացրեց, բայց քայլ չարավ: Թողեցինք ծեռացանք: Հավանտարիմ ձին մի քանի անգամ խրխնջաց, ապա գլուխը կախ ծետևեց մեզ:

Մի քանի օրվա մեջ ես ու ձին մտերմացանք: Ես նրան Ալիք անունով կոչեցի, շուտ ընտելացավ նոր անվանը:

Մեր զորամասը պետք է Դնեպրն անցներ:

Անասելի դժվարություններ էին ստեղծվել, ես լողալ չգիտեի, դիմեցի ծրամանատարին:

— Ընկե՛ր կապիտան, լողալ չգիտեմ, ինչպե՞ս գետն անցնեմ:

— Թուլացրո՛ւ ձիու փորկապները, բռնիր պոչից, նա քեզ ափ կծանի...

Զենքերս ու ծագուստներս կապեցի թամբին, բռնեցի ձիու պոչից, մի քանի րոպեում խնլացի կենդանին ուղիղ գծով լողալով դուրս եկավ ափ: Մոտեցա, շոյեցի իմ Ալիքի ճակատը:

Երկար մնացինք Դնեպրի ափին:

Խրամատներ փորեցինք, գետնատներ կառուցեցինք, ծառի կանաչ ճյուղերով քողարկեցինք:

Մի օր, երեկոյան դեմ, մեր ծետախույզները «կենդանի լեզու» բերեցին: Երկարածասակ, դեղին ուսադիրներով մի բարձրաստիճան գերմանացի սպա էր: Նրանից իմացանք, որ ուր որ է գերմանացիները կծարձակվեն: Ես Ալիքին տարա ուտիների անտառում թաքցրի:

Մարտը սկսվեց ուշ գիշերին: Լուսարձակները լուսավորում էին գետի լայնքն ու երկայնքը: Պարզ երևում էին առաջ սողոսկող թշնամու լաստերն ու մակույկները: Մեր գնդացիրները կրակ էին թափում:

Թշնամին մեծ կորուստներից ծետո ետ նածանջեց:

Առավոտյան օդում ծռնդացին գերմանական ռմբակոծիչները: Քիչ անց ծողը ցնցվեց, Դնեպրի ջրերը երկինք բարձրացան, խրամատներին փոշու ամպ նրստեց:

Այս մղձավանջային թոծուբոծի մեջ ականջիս ծասավ ձիու խրխնջոցը: Երբ ռմբակոծիչները փոքր դադար տվին, ես դուրս թռա խրամատից, վազեցի ուռիների անտառ՝ Ալիքի մոտ: Ռումբի բեկորը պոկել տարել էր ձիու ձախ ականջը, արյուն էր ծոսում ռունգերից ու ծնոտից: Սանձն առա, քաշեցի սանիտարական կետը: Ծանոթ բուժքրոջը՝ Սիմային խնդրեցի, որ օգնի Ալիքին... Նա մի դույլ ջուր բերեց, լվացինք ձիու լերդացած արյունը:

Ապա Սիման ծատուկ լուծույթով մաքրեց վերքը:

Հաջորդ օրը թշնամին կրկին գրոծի անցավ: Օդը լցվեց թշնամու ռմբակոծիչներով, ռումբերը սուլելով թափվեցին: Հողը ցնցվում էր, ծառերը գետին էին տապալվում... Իսկ թե ծետո ինչ եղավ, չիմացա...

Տասը-տասներկու օր էր անցել, աչքերս բացեցի ծիվանդանոցում:



Պատերազմը վերջացել էր, տարիներ էին անցել, մի օր էլ նամակ եմ ստանում Ուկրաինայի Էլիզարով գյուղի դպրոցականներից. «Կարդացինք ձեր ակնարկը «Լիրովգրադսկի պրավդա» թերթում Ալիք անունով ձիու մասին: Եթե ակնարկում գրածը ճշմարտություն է, ապա այդ ձին գտնվում է մեր սովխոզում: Նա կապտավուն մի մատակ է՝ առանց ձախ ականջի: Արդեն վեցերորդ տարին է, ինչ գտնվում է մեր ֆերմայում»:

Գնում եմ Էլիզարով գյուղը: Դպրոցականները խանդավառությամբ են դիմավորում ինձ: Ծանոթանում եմ դպրոցի դիրեկտոր Գրիգորի Մարկովիչի ծետ:

— Շուտով կերևա ձեր Ալիքը,— ասում է դիրեկտորը,— թեև ֆերմայում է աշխատում, բայց ծասցնում է օգնել նաև մեզ, ջուր է կրում դպրոցի ծամար:

Դանդաղ ընթացքով, առանց ուղեկցողի դպրոցի բակ է մտնում մի ձիասայլակ՝ ջրով լի տակառը վրան: Ես չեմ ծամբերում, առաջ եմ վազում՝ «Ալի՜ք, Ալի՜ք» կանչելով:

Ձին կանգ է առնում, խրխնջում...

Գրկում եմ նրա գլուխը, ծամբուրում ճակատը:

Նա առաջվա պես գլուխը ծպում է կրծքիս, իսկ աչքերը խոնավանում են, արցունքով լցվում:



ԱԼԲԵՐՏ ՓԱՐՍԱԴԱՆՅԱՆ

# ՀՈՒԶԻՉ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Լուսանկարը՝ ՎԱՀԱՆ ՔՈՉԱՐԻ

Թշնամին ձգտում էր գրավել Դոնի Ռոստովը: Քաղաքի մատույցներում ֆաշիստների դիմաց դիրք էր գրավել Սերգեյ Օհանյանի մարտկոցը: Արկերը թափվում էին կարկուտի նման, բայց մարտկոցի խիզախ կոմերիտականները դիպուկ հրետանազարկերով շարքից հանում էին գրոհող տանկերին: Վիրավորված, արյունաքամ մարտիկները ետ էին մղում կրկին ու կրկին գրոհի նետվող անարգ թշնամուն, մինչև որ մարտի դաշտում ծխաց վերջին՝ 50-րդ տանկը: Թշնամին չկարողացավ հաղթահարել մարտկոցի դիմադրությունը:

Սերգեյ Օհանյանը շատերի հետ ինքն էլ զոհվեց մարտում:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով նա ետմահու արժանացավ Սովետական Միության հերոսի կոչման:

Տարիներ անցան... Վաղուց են լռել հրանոթային համազարկերը: Սպիացել են պատերազմի վերքերը: Բայց հայրենիքը չի մոռանում իր զավակներին, որոնք իրենց կյանքի գնով կռեցին հաղթանակը:

Սերգեյ Օհանյանի սխրանքը նույնպես անմոռաց մնաց: Հենց վերջերս Երևանի քաղսովետի գործկոմի որոշմամբ մայրաքաղաքի հարավարևմտյան զանգվածի լայնահուն փողոցներից մեկը կոչվեց հայ քաջորդու անունով:

... Եվ այստեղից սկիզբ առավ մի հուզիչ պատմություն:

Սերգեյ Օհանյանի անունը կրող փողոցի սկզբնամասում է գտնվում № 174 դպրոցը: Պիոներական դրուժինայի խորհուրդը որոշեց ստանձնել փողոցի շեֆությունը, բարեկարգել, ծառեր տնկել մայթեզրերին: Ավելին, որոշեցին դպրոցում ստեղծել մարտական փառքի սրահ, դպրոցական բոլոր սերունդներին տեղյակ պահել Սերգեյ Օհանյանի սխրանքի մասին:

Հավաքվեցին բազմաթիվ նյութեր, լուսանկարներ, որոնումների ընթացքում պիոներները գտան նաև հերոսի մարտական ընկերոջը՝ պահեստի փոխգնդապետ Ահարոն Տոնոյանին, որը հուշեր տրամադրեց մարտական փառքի թանգարանին:

Մի օր էլ 5-րդ դասարանցի Արայիկ Շիրինյանը դպրոց բերեց... մի մեծ արկղ, ուր ամփոփված էին գնդակից խոցված զինվորական սաղավարտ, արկի բեկոր, զինվորական կոշիկներ, գդալ, գնդակի մի պարկուճ և դրանից հանված՝ խունացած, հազիվ ընթեռնելի փոքրիկ մի գրություն: Այս ամենը մի հին խրամատում գտել էին Զապորոժիեի մարզի Տոկմակ քաղաքի դպրոցականներ, պատանի հետախույզներ Ռիֆար Գեյչենկոն, Ալեքսանդր Նիկոլայենկոն, Իգոր Տարանենկոն: 1977 թվականին, իրենց դպրոցի մարտական փառքի սրահի համար ցուցանմուշներ որոնելիս, պատանի հետախույզները գտել

էին զինվորի աճյուն՝ գլխին խոցված սաղավարտը, գնդակի պարկուճում՝ գրեթե փոշիացած թուղթը: Հազիվ կարողացել են կարդալ զինվորի ազգանունը՝ Եփրանոսյան, հասցեն՝ Ախալցխա: Պատանի հետախույզներն սկսել են որոնումները: Ախալցխայի «Ծիթելի դրոշ» թերթը իր 1977 թվականի դեկտեմբերի 3-ի համարում պատմել է այդ մասին: Շուտով գրտնըվել է զինվորի քույրը՝ Արաքսյա Մութաֆյանը, որն ապրում է Երևանում: Արաքսյա տատիկը մեկնել է Ջապորոժիե, հանդիպել հետախույզներին, ծաղիկներ դրել հայրենիքի համար զոհված եղբոր գերեզմանին: Երևան վերադառնալով՝ նա իր հետ բերել է սաղավարտը, արկի բեկորը, որից զոհվել է եղբայրը, մյուս իրերը:

Եվ ահա, նրա թոռնիկը՝ Արայիկը, տեսնելով, որ դպրոցում մարտական թանգարան է բացվում, խնդրել է տատիկին դրանք նվիրել թանգարանին: Ու Սերգեյ Օհանյանին նվիրված վահանակների կողքին տեղադրվեցին նոր վահանակներ՝ նվիրված Թադևոս Եփրանոսյանին: Կարծես զինվորը տուն վերադարձավ և փառքի թանգարանում գտավ իր անմահությունը:

Բայց սա դեռ բոլորը չէ: 8-րդ դասարանցի Արսեն Հարությունյանը թանգարանին նվիրեց իր պապիկի՝ Պավել Ջանիբեկյանի «Կարմիր աստղի», «Կարմիր դրոշի» շքանշանները, «Արիության համար», «Խիզախության համար» մեդալները և այլ նյութեր: Թանգարանում տեղ գտան նաև հաղթականորեն Բեռլին մըտած Անուշավան Մատինյանի մասին պատմող մի շարք նյութեր, պատերազմում զոհված Գեղամ Բրուտյանի, Մխիթար Մխիթարյանի ռազմաճակատային եռանկյունի նամակները, հուզիչ փաստաթղթերը:

Ցուցանմուշները պատմում են նաև, որ ... դպրոցի դիրեկտոր Կարլեն Մելիքսեթյանը եղել է լատվիական Լիեպայա քաղաքի հերոս պաշտպաններից մեկը, որ մինչև այսօր էլ արկի բեկոր է «ննջում» նրա մարմնում: «Կոմսոմոլսկայա պրավդա» թերթը նրա մասին պատմել է իր ընթերցողներին, և հիմա մեր հայրենիքի բոլոր ծայրերից նամակներ են ըստացվում, ընկեր Մելիքսեթյանից խնդրում են պատմել հերոսական օրերի մասին:



Աշակերտները հուզմունքով իմացան, որ իրենց պատմության ուսուցիչը՝ Սպարտակ Մարտիրոսյանը նույնպես մարտերով հասել է մինչև Բեռլին, որ նրա կուրծքը զարդարում են հայրենիքի մի շարք շքանշաններ ու մեդալներ...

Մարտական փառքի թանգարանը օրեցօր հարստանում է: Այստեղ տեղի են ունենում ջոկատային հավաքույթներ, այստեղ հոկտեմբերիկները դառնում են պիոներներ՝ երդվելով նմանվել խիզախ հերոսներին, սիրել հայրենիքը և պատրաստ լինել նրա պաշտպանությանը:

ԵՐՎԱՆԴ ՊԵՏՐՈՍՅԱՆ

# ՔԱՐԱՅՐՆԵՐՈՒՄ ՔՆԱԾ ՁԱՅՆԵՐԸ

Երեխաներն եկան սարից՝
Գլորելով մի բան:
Մոտ գնացի և ինչ տեսնեմ՝
Բերանը փակ մի ձայն:

— Այս որտեղի՞ց,— հարցրեցի,—
Որտեղի՞ց եք գտել:—
Ծիծաղեցին.
— Մեծ քարայրում
Շատ կան, պահ են մտել:

Երբ տեսել են, որ էլ իրենց
Ոչ մի լսող չկա,
Նստած այնտեղ երազում են,
Թե նորից դուրս կգան...

Թող գան, խնդրեմ, թող դուրս ելնեն,
Սակայն՝ միայն այսպես...
Որ բոլորին մենք գլորենք՝
Խաղալիքներ որպես:

Բերանները պինդ կփակենք,
Որ լուռ մնան, անձայն,
Որ թվա, թե սարից բերած
Սառած գնդեր են ձյան:
— Լավ եք, լավ եք դուք մտածել,—
Քրքջացի պոռանց,—
Սակայն, արժեր որ տերերն էլ
Հայտնվեին դրանց:

# ԱՐԹՆԱՑՈՒՄ

Արևն ելավ,
Զանգի նման ղողանջեց.
— Ելե՜ք, ելե՛ք,—
Քնածներին նա կանչեց:
Գիշերն անցավ,
Առավոտ է ու գարուն,
Ես խնկահոտ
Լույս ու սեր եմ ձեզ բերում:
Հողը ձգվեց...
Քարերն անգամ արթնացան:
Ամեն մի ճիչ
Ծիլ ու աղբյուր մի դարձավ:
Դու էլ, տղա՛ս,
Նուշ-նուշ աչքերդ ես բացել...
Մի գիշերում
Այս որքա՛ն ես մեծացել:
Դե, ե՛լ տեղից
Ու զորացիր նորից նոր,
Գարնան օրվա
Թագադրված թագավոր:

ՌՈՒԶԱՆ ԱՍԱՏՐՅԱՆ

# ՋՈՒՐՆ ԻՐ ՃԱՄՓԱՆ ԿԳՏՆԻ

Սարի տակից
տաք մի օր
Առվակ ելավ,
իջավ ձոր,
Ճամփա ընկավ,
որ գնա...
Քարերն հենց այս
իմացան,
Ջրի ճամփան
փակեցին:
Փշերն հենց այս
իմացան,
Գլուխ գլխի
տվեցին:
Այնպես արին,
որ հանկարծ
Առուն ճամփա
չգնա,
Այդ սարի տակ
հենց մնա:
Առվակն իջավ
խոր հատակ,
Հոսեց, գնաց
շատ հեռու,
Այլ մի սարի
կրծքի տակ
Նորից ժպտաց
մի առու:
Ելավ առվակ
մի զուլալ,
Ինքը՝ փոքրիկ,
ջուրը պաղ,
Ասաց՝ զուր եք
ինձ փակում,
Խոր ձորերի
հատակում:
Ես որտեղ էլ
որ լինեմ,
Ջուր եմ՝ ճամփաս
կգտնեմ:

# ՁԿՆԻԿՆԵՐԸ

Ջրավազան ունենք փոքրիկ
Մեր տան առաջ:
Լող են տալիս ձկնիկները
Մեկ ձախ, մեկ՝ աջ:
Լող են տալիս, սուզվում, ելնում՝
Առանց խոսքի,
Գույն է առել ավազանը
Արծաթ, ոսկի...
Եվ ճոճվում է ջուրը փայլուն՝
Ծոճքի նման:
Ջուրը մտնեմ,
Ձկնիկներին ընկերանամ:

# ԼՈՒՍԻՆԵ

Կար շատ սիրուն մի աղջիկ,
Հեքիաթների փունջ, փնջիկ.
Աչքեր ուներ նշաձև,
Քիթը՝ փոքրիկ մի տերև:
Ուր գնար՝ լույս էր լինում.
Արև ու հույս էր լինում.
Երգում էր գործ անելիս.
Չէր թնգթնգում, չէր լալիս:
Դասերն արագ պատրաստում,
Հետո էլ գիրք էր կարդում:
Մայրիկը թե գործից գար,
Տանն անելու բան չկար:
Ի՞նչ աղջիկ է, ո՞վ է նա,
Տեսնես որտե՞ղ է հիմա,
Թե որ լույս ու լուսին է,
Եկեք կոչենք Լուսինե:

ՆԿ. ԱՆԴՐԱՆԻԿ ԿԻԼԻԿՅԱՆԻ

ՀԱՅԿ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ԲԱՌԸ ՀԶՈՐԱՑՎԱԾ ԶԻՆՎՈՐ Է

ՔՎԵ
ԱՐԿ
ԲԱՐԿ
ՑՔԻ

Մի արքա՝ հարևան երկիրը նվաճելու համար տասը տարի պատերազմի պատրաստություն է տեսնում, բայց պատրաստությունն ավարտելուց հետո դժվարանում է արշավանքն սկսել: Զորապետներից մի քանիսը դեմ էին արշավանքին, թեև այդ մասին բացեիբաց չէին հայտնում թագավորին: Ամենքի կարծիքն ստուգապես իմանալու և վերջնական վճիռ կայացնելու նպատակով արքան մի այսպիսի միջոցի է դիմում: Զորապետներից յուրաքանչյուրին տալիս է երկու փոքրիկ քար՝ մեկը սպիտակ, մյուսը՝ գորշ: Արշավանքն սկսելու կողմնակիցը պետք է ամանի մեջ սպիտակ քարը գցեր, իսկ ով դեմ էր՝ գորշ քարը: Եվ ահա մարդկանց աչքից բավական հեռավորության վրա դրված ամանի մեջ քառասուն զորապետներ նետում են սպիտակ կամ գորշ քարեր: Հետո ամանը վերցնում ու արքայի աչքի առջև հաշվում են քարերը: Ամանի մեջ նետված քարերից քսանչորսը սպիտակ էր, տասնվեցը՝ գորշ: Պարզ է դառնում, որ զորապետների մեծ մասը համաձայն էր արշավանք սկսելուն:

Այս արարողությունը կոչվել է **քվեարկել**: **Քվե** հին հայերենում նշանակել է վիճակաքար, քար, **արկել**՝ գցել, նետել: Այսպիսով **քվեարկել** պարզապես նշանակում է քար գցել:

Արքան քվեարկելով միայն մի խնդիր չլուծեց: Երբ զորք կապած հասավ ճակատամարտի վայրը, նա ցանկացավ իմանալ իր զորականների թիվը: Եվ նորից սկսեցին քվեարկել (քվե արկանել): Այս անգամ յուրաքանչյուրը մի քար պիտի նետեր նշված տեղը: Հաշվեցին, դուրս եկավ իննսունինը հազար: Պետք է հարյուր հազար լիներ: Մինչև տեղ հասնելը պակասել էր երկու հազարը: Հավանաբար մի մասը հիվանդացել էր և ճանապարհին մնացել, մի մասն էլ դասալիք էր դարձել:

Երկու դեպքում էլ քար են գցել, առաջին անգամ թեր ու դեմ կարծիքներն իմանալու, այնուհետև՝ զորքի ընդհանուր թիվը ճշտելու համար:

Մեր ժամանակներում **քվեարկել** նշանակում է ընտրովի պաշտոնի համար առաջադրված թեկնածուին ձայն տալ (կողմ կամ դեմ): Հաճախ կարող ենք քվեարկել նաև որևէ առաջարկ ընդունելիս: Մարդիկ հիմա քվեատուփի մեջ քարի փոխարեն թուղթ (քվեաթերթ) են գցում: Եվ, չնայած քարը փոխարինվել է թղթով, բառը չի փոխվել, քվեարկելն առանց «քերծվածքի» հասել է մեզ՝ իր իմաստային նշանակությունը համարյա ամբողջությամբ պահպանած:

Այսպիսով՝ **քվե** նշանակում է վիճակաքար: Բայց քվեարկել բառի երկրորդ մասի վերաբերյալ մենք շատ ասելիք ունենք: **Արկել** (կամ **արկանել**) նշանակում

է գցել: Արմատն է **արկ** բառը, որ նույնպես ունի գցել, նետել, ձգել իմաստը: **Արկ** բառը ձեզ ծանոթ է մի նշանակությամբ: Եթե հարցնենք, թե ինչ է արկը, դուք անմիջապես կպատասխանեք՝ պայթուցիկ լիցքով ռումբ, որ արձակում են հրանոթից: Ճիշտ է: Սակայն դրանով այդ բառի իմաստը չի վերջանում: **Արկը** հայերենի ամենաբազմաշնորհ արմատներից է: Նրա համար պատնեշներ չկան: Բառաբարդումների մեջ նա հայտնվում է և՛ բառասկզբում, և՛ բառամիջում, և՛ բառավերջում: Հայերենն ունի **արկ** արմատով հարյուրավոր բարդ բառեր: Եվ այն անչափ կենսունակ է, նրանով դեռ շատ բառաբարդումներ կստեղծվեն:

**Գլխարկը** պարզապես նշանակում է գլխին գցվող բան: Նույնը և վերարկու բառը՝ նշանակում է վրան գցվող բան:

**Քարարկել** բառը կազմված է **քար արկել** մասերից և նշանակում է քար գցել, քարկոծել: Մեր ժամանակներում քարկոծելն ունի վարաբանելու, քննադատելու, պարսավելու, նախատելու իմաստ: Դա արվում է խոսքով: Կարող եք հարցնել, թե քարն ի՞նչ գործ ունի այստեղ: Հնում մեկին տանջամահ անելու համար քարարկել կամ քարկոծել են, այսինքն նրա վրա քարեր շպրտելով սպանել են:

Տեսնում եք, բառերի արմատներում ժողովրդի պատմությունն է թաքնված: Այնպես որ բառերը սոսկ խոսակցական նշանակություն չունեն: Նրանք մարմնավորում են նաև հնադարյան կյանքը:

**Անվանարկելը** կազմված է **անուն արկել (գցել)** բառերից և նշանակում է անունը գցել, վարկաբեկել:

**Ակնարկ** բառացի նշանակում է աչքով անել, աչք գցել, իմաստով՝ նայվածք, թռուցիկ հայացք, որևէ բանի համառոտագրություն, փոխաբերական իմաստով՝ որևէ բանի մասին ինչ-որ չափով քողարկված, բայց կռահվող արտահայտություն: **Ակնարկը** նաև գրական ժանր է, որի մեջ ներկայացվում կամ պատկերվում են իրական անձերն ու իրադարձությունները: Եթե ավելի հստակ ձևակերպենք, ակնարկի մեջ պետք է նկարագրել այն, ինչ տեսել ես աչքով: Հենց դրա համար էլ կոչվում է ակնարկ, այսինքն աչքի գցած, աչքով տեսնված բան (ակն-աչք, արկել-գցել):

**Ակնարկ** բառից էլ կազմվել է **ակնարկելը**, որն ունի նույն իմաստի հետևյալ նրբերանգները. հայացքով նշան անել, աչքով ցույց տալ, անուղղակիորեն հայտնել՝ հիշեցնել:

**Խուզարկել** բառի արմատներն են **խուզ արկել: Խուզ** նշանակում է կտրել, խզել, պոկել (օրինակ, մազերը): Խուզարկել նշանակում է փտանգը հեռացնել, հետախուզել, հետազոտել, անհրաժեշտ տվյալներ ձեռք բերելու նպատակով, տրնտղել, զննել, չորս կողմը նայել: Սրանից է **խուզարկաշուն** նորաստեղծ բառը:

Ծատերին թվում է, թե **հողարկավորել** նշանակում է հող լցնել գերեզմանին: Հողարկավորելը կազմված է ոչ թե **հող արկանել-ից**, այլ **ուղի արկանել** (այսինքն՝ ուղևորել, ճանապարհ գցել) արմատներից:

Այսքանից հետո ձեզ համար դժվար չէ վերլուծել հետևյալ բառաբարդումները. **բանտարկել**՝ բանտի մեջ գցել, **սալարկել**՝ սալ (տափակ քար) գցել, **վանկարկել**՝ վանկ-վանկ արտասանել, **տնկարկ**՝ տունկ գցել, **գործարկել**՝ գործի մեջ գցել, **փորձարկել**՝ փորձել, **խաղարկել**՝ խաղի մեջ գցել, վիճակահանությամբ որոշել շահումները, որևէ խաղ խաղալ, դրամա ներկայացնել, **սակարկել**՝ սահմանված գինը գցելու, իջեցնելու, ավելի ձեռնտու գնով ապրանք առնելու նպատակով բանակցելը, **ներարկել**՝ ներս գցել (հոգու կամ մարմնի մեջ), **խնկարկել**՝ խնկի ծուխ (նաև՝ բույր ու հոտ) տարածել, փոխաբերական իմաստով՝ շողոքորթելու նպատակով մեծարել, փառաբանել:

Մի անգամ ես ներկա եղա, թե երկու մարդ ինչպես էին վիճում **հիմնարկություն** և **ձեռնարկություն** բառերի շուրջ: Մեկն ասում էր, թե երկուսն էլ նույն իմաստն ունեն, մյուսը չէր կարողանում բացատրել դրանց նրբին տարբերությունները:

**Հիմնարկություն** բառը կազմված է **հիմն արկանել** արմատներից, որ նշանակում է հիմքը գցել: Այսպես, երբ հնում սկսում էին տուն կառուցել, ասում էին՝ տան **հիմն արկանել**, այսինքն տան հիմքը դնել:

**Հիմնարկություն** բառի ազգակիցն է **ձեռնարկությունը:**

**Ձեռնարկել** նշանակում է որևէ գործ սկսել, ձեռք զարկել որևէ բանի: Ի միջի այլոց հայտնենք, որ **ձեռնարկ** են կոչվում դասագրքերը և գիտելիքների մի որոշակի բնագավառի մասին տեղեկություններ պարունակող գրքերը: **Ձեռնարկել** բառից էլ ստեղծվել է ձեռնարկությունը: Բառի խորքում պահպանվել է ձեռքով ստեղծելու նրբիմաստը: Այդ պատճառով էլ **ձեռնարկություն** են կոչվում արտադրական կամ առևտրատնտեսական միավոր-

ների որոշակի մի խումբ, ուր հիմնականում վերջնական արտադրանք՝ արդյունք է տրվում: Դրանց թվին են պատկանում գործարանները, ֆաբրիկաները, կոմբինատները և այլն:

**Հիմնարկ** կամ **հիմնարկություն** են կոչվում կրթական ու գիտական հաստատությունները, կառավարման, տնտեսության որևէ բնագավառ վարող կազմակերպությունները, օրինակ, մանկապարտեզները, դպրոցները, համալսարանները, ինստիտուտները, խմբագրությունները, մինիստրությունները և այլն:

Հիմնարկության մեջ մտավոր աշխատանքի բաժինը շատ է: «Պիոներ»-ը տպագրության է պատրաստում «Պիոներ» ամսագրի խմբագրությունը: Այստեղ են խմբագրվում, սրբագրվում, ձևավորվում և վերջնական տպագրության պատրաստվում բոլոր նյութերը: Բայց ամսագիրը ոչ թե խմբագրությունն է տպագրում, այլ՝ տպարանը: Դրա համար էլ «Պիոներ» ամսագրի խմբագրությունը կոչվում է **հիմնարկ**, իսկ ամսագիրը տպագրող տպարանը՝ **ձեռնարկություն:**

**Արկ** արմատով են կազմված նաև **արկած, առարկա, առարկել, բանաարկու, ենթարկել, փոխարկել, թվարկել, քողարկել, դիտարկել** և շատ ու շատ բառեր:

Հիմա դառնանք **բարկ** բառին: Լեզվաբանները **արկ** ու **բարկ** բառերի միջև ազգակցություն չեն գտնում: Գուցե կապ կա, բայց առայժմ չի բացահայտված: **Բարկ** նշանակում է **թունդ, ուժգին, սաստիկ, շատ:** Օրինակ, բարկ արև: Նրանից են կազմված **բարկանալ**՝ զայրանալ, **բարկանայթ**՝ ուժգին ճայթող, բառերը:

Արևմտահայերը կոնյակին անվանում են **բարկօղի:** Կոնյակի հայրենիքը Ֆրանսիայի Շարանտա դեպարտամենտում գտնվող Կոնյակ քաղաքն է, որտեղ արտադրվող բարձր սպիրտայնությամբ խըմիչքները, ի պատիվ այդ քաղաքի, ստացել են կոնյակ անունը: Ընտիր կոնյակներ են արտադրվում նաև Սովետական Հայաստանում: Հայկական կոնյակները համաշխարհային համբավի են արժանացել: **Կոնյակին** պիտի **կոնյակ** ասել: **Բարկօղի** կարելի է կոչել թունդ օղուն: Հին հայերենում օղին կոչվել է **ցքի:** Մեր նախնիներն ասում էին. ցքի խմողը ցքի բառն էլ կմոռանա: Դուք պետք է ցքի չխմեք, բայց բառը հիշեք:






**Գարնանային մեղմ ու զովաշունչ առավոտ էր: Խոտերով տարված՝ կանգնել էի բազմերանգ ծաղիկներով ծածկված դաշտում: Հանկարծ հեռու երկնակամարում մի տարօրինակ մրրիկ հայտնվեց: Շղարշված ծիածանի բոլոր գույներով, պարելով գալիս էր դեպի ինձ: Աղամի ժամանակներից մնացած լքյալ ու տարաբախտ լորենու տակ էի: Արևատես, բազմերանգ ու անսահման երջանիկ՝ մրրիկը սուրում էր տափաստանով: Նա նման էր դաշտի բոլոր ծաղիկներին առանձին-առանձին և՝ միասին: Հանկարծ թավշյա գլխաշոր դարձավ և փողփողալով փաթաթվեց լորենուն: Այն, ինչ հաջորդեց դրան՝ հրաշք չէր, հրաշք կլիներ, եթե այդպես չլիներ: Յոթներանգ գլխաշորը ջերմություն պարգևեց ծառին, և ծառը կանաչեց, ծաղկեց, կյանք առավ, տերևներն սկսեցին խշխշալ: Յոթներանգ հրաշքը հետո մի մեծ թիթեռ դարձավ և թևասփյուռ բազմեց ծփացող հսկայի կատարին:**



— Ներքև՛ իջիր,— խնդրեցի ես: Դա ավելի կարոտ էր, քան խնդրանք: Եվ թիթեռը ներքև թռավ:

— Մի բա՛ն ասա:

Թիթեռը փոխարկվեց ծիածանագույն, ոսկեհեր, սպիտակ, մեծ ժապավենով կապուտաչյա և թափանցիկ իրանով մի աղջկա: Աղջիկը կանգնել էր իմ առջև ու ժպտում էր: Կլիներ յոթ-ութ տարեկան:

— Բարև՛,— համարյա շշուկով ողջունեցի ես, քանզի վախենում էի, որ զարմանահրաշ տեսիլքը կչքանա:

— Բարև՛ ձեզ, հարգելի՛:— Դա պատասխան խոսք չէր, երգ էր, երաժշտական թռվիչ արտահայտություն: Այսուհետև, երբ աղջիկը կխոսի, միշտ պատկերացրեք, որ ծիածանն է երգում:

— Դու ծիածա՞ն ես,— հարցրի ես:

— Ո՛չ:

— Գարու՞ն:

— Ո՛չ:

— Իսկ ո՞վ ես: Անունդ ի՞նչ է:

Աղջիկն այնպիսի անուն տվեց, որի նմանը չկա, ուստի ես չկարողացա հիշել:

— Այնուամենայնիվ, ո՞վ ես դու:

— Ես Ամենինչն եմ:— Հետո վանկատելով, աղջիկը երգեց այս բառերը՝ «ամեն» և «ինչ»:

— Ինչպե՞ս թե՝ Ամենինչ:

— Շատ պարզ,— պատասխանեց նա և տարակուսանքով նայեց ինձ:

Անհավոր կասկած սողոսկեց սիրտս:

— Դու ուրիշ մոլորակի՞ց ես եկել:— Պատասխանին սպասելիս արյունս ասես պաղեց երակներիս մեջ:

Աղջիկը գլխով արեց: Ես կծեցի շրթունքըս և համոզվեցի, որ երազում չեմ:

— Ի՞նչ է քո մոլորակի անունը:

Աղջիկը կրկին այնպիսի անուն տվեց, որ նմանը չկա , ուստի չկարողացա հիշել:

— Ինչպիսի՞ն է ձեր մոլորակը:

Աղջիկը թոթվեց ուսերը:

— Լեռնայի՞ն է, ծովաշա՞տ է, հովտայի՞ն է, տա՞ք է, ցո՞ւրտ է, ինչպիսի՞ն է:

— Ինձ նման է:

— Գույնզգույն, թափանցիկ և անմարմի՞ն:

Աղջիկը ժպտաց և, ի նշան համաձայնության, նորից գլխով արեց:

— Ձեր մոլորակը հեռո՞ւ է:

Նա չհասկացավ «հեռու» բառի իմաստը, ուստի ես վեր նայեցի ու ձեռքս երկինք պարզելով բացականչեցի՝ հեռու-ո՜ւ, հեռու-ո՜ւ...

— Հեռու-ու՜, հեռու-ու՜...— իր հերթին ձեռքը դեպի երկինք պարզելով, շարունակեց աղջիկը:

— Մեր լեզուն ո՞վ է սովորեցրել քեզ:

— Հիմա եմ սովորում:

— Ձեր լեզուն ինչպիսի՞ն է:

Աղջիկը երգեց անըմբռնելի ձայնով: Ասես երկինքն ու երկիրը շարժվեցին: Նրա հետ երգում էին բոլորը՝ յորենին, ծաղիկները, հողը, ջուրը, օդը: Իսկ ես, ինչպես ձուկը ակվարիումի մեջ, լողում էի այդ կախարդիչ հնչյունների աշխարհում: Այդպես շարունակվեց մոտավորապես մեկ րոպե:

— Դա՞ է ձեր լեզուն,— հարցրի:

— Այո: Հավանու՞մ ես:

Եվ դու կարծում ես, թե այդ լեզուն բոլո՞րը կհասկանան:

— Իհարկե:

Աղջիկը նորից սկսեց երգել: Երգելիս նա ձեռքը մեկնում էր դեպի տարբեր առարկաներ, հավանաբար նրանց անունները էր տալիս, քանզի առարկան, որին ուղղում էր խոսքը՝ գույնը փոխում էր ու աղջկա ձայնով երգում:

— Ինձ մո՛տ արի,— խնդրեցի աղջըկան:
Աղջիկը մոտեցավ:
— Ինչպե՞ս հայտնվեցիր այստեղ, փոքրի՛կս:
— Մայրիկիս մոտից եմ փախել:
— Մենակ չե՞ս վախենում:
— Ինչի՞ց պիտի վախենամ:
— Բա որ կորչես ու մայրիկդ քեզ չըգտնի՞:
— Ես մայրիկիս կկարոտեմ, ու նա կգա ինձ կգտնի:
— Իսկ եթե տուն գնալ ուզես, ինչպե՞ս ես գնալու:
— Կկարոտեմ ու կգնամ:
— Կկարոտես և ուրիշ ոչի՞նչ:
— Ուրիշ ոչինչ, հարգելի՛:
«Ինչու՞» և «ինչպե՞ս» բառերը կորցրին իրենց իմաստը: Այդ պահին ամեն ինչ ինձ համար և՛ հասկանալի էր, և՛ անհասկանալի, և՛ շատ պարզ, և՛ անչափ բարդ ու խճճված:
— Երկրագնդի վրա առաջի՞ն անգամ ես լինում:
— Առաջին անգամ:
— Այլ մոլորակների վրա էլ եղե՞լ ես:
Աղջիկը գլխով արեց:
— Որևէ տեղ կյանքի հանդիպե՞լ ես:
Պատասխանին սպասելիս արյունս նորից պաղեց երակներիս մեջ: Շունչս կըտրըվում էր:
— Շատ մոլորակների վրա եմ եղել, հարգելի՛,— ժպտաց աղջիկը:
— Նրա՞նք էլ մերի նման են:
— Ո՛չ, հարգելի՛, տարբեր են,— աղջիկը ձեռքերը տարածեց ու երկինք նայեց:
— Այսի՞նքն:
— Դժվարանում եմ ասել: Ես ուր էլ գնում եմ, դառնում եմ այնպիսին, ինչպիսի կյանքի հանդիպում եմ:
Լռություն:
— Ո՞վ ես դու,— հանկարծ հարցրեց աղջիկը:
— Ե-ե՞ս... Դու չգիտե՞ս՝ ով եմ ես:
Աղջիկը թոթվեց ուսերը:
— ... Ես մարդ եմ: Երկրագունդը իմ տունն է: Սնվում եմ ջրով, օդով, արևով, մսով, բույսերով...
— Իսկ դու, անձամբ դու, ո՞վ ես:
— Ասացի չէ՞՝ մարդ եմ: Ես ունեի իմ ծնողները, նրանք՝ իրենց ծնողները, նրանք՝ իրենցը, նրանք էլ՝ իրենցը և այսպես շարունակ...
— Մինչև ու՞ր:
— Չգիտեմ:
— Ուրեմն՝ չգիտես, թե դու ո՞վ ես:
— Չէ՛, չգիտեմ,— ասեցի ես:
Աղջիկը նորից ժպտաց:
— Այստեղ ի՞նչ ես անում,— հարցրեց նա ու հայացքով զննեց շրջակայքը:
— Ա-այստե՞ղ... Ոչինչ: Հենց այնպես կանգնել եմ... Ես հիվանդ եմ: Գիտե՞ս ինչ ասել է՝ հիվանդ: Այսինքն, երբ մարդ իրեն վատ է զգում: Ես հիվանդ եմ: Ամեն առավոտ գալիս եմ զբոսանքի, մաքուր օդ եմ շնչում այս ծաղկառատ հովտում: Այս ամպած-չորացած յորենու տակ եմ լինում: Ուզում եմ առողջությունս վերականգնել և նորից կյանք առնել այնպես, ինչպես դու կյանք տվեցիր ու առողջացրիր էս լորենուն:
— Քեզ ի՞նչ է պատահել,— կարեկցանքով հարցրեց աղջիկը:
— Ես շատ ծանր հիվանդացա: Սիրտս էր ցավում: Գիտե՞ս ինչ ասել է սիրտ: Մարդը առանց սրտի չի կարող ապրել, և, ինչպես բոլոր մարդիկ, ես էլ սիրտ ունեմ՝ բաբախող, կենդանություն պարգևող սիրտ: Եվ, ահա, մի քանի տարի առաջ սիրտս նաք տվեց, տե՛ս:
Աղջիկն իր վարդագույն, գեղեցիկ ձեռքը դրեց սրտիս, և ես կենարար ջերմություն զգացի:
— ... Հա՛, ես ամեն օր այս ծաղկահովիտն եմ գալիս, որպեսզի սիրտս առողջանա: Հիմա համեմատաբար լավ եմ, բայց արդյո՞ք նախկինի պես կբաբախի, կջերմանա...
Աղջիկը ոչինչ չպատասխանեց, բայց կրկին ձեռքը դրեց կրծքիս:
— Իսկ դուք հիվանդանո՞ւմ եք,— հարցրի ես:
— Այո՛, իհարկե,— ժպտաց նա:
— Ձեզ ի՞նչ կարող է պատահել:
— Գունաթափվում ենք, խամրում:
— Իսկ ինչպե՞ս եք բուժվում:
— Իրար գույն ենք տալիս: Երանգավորում ենք մեկմեկու: Մեկս մյուսի գույնն ենք առնում:
— Մինչև ե՞րբ:
— Ընդմիշտ: Ի վերջո միմյանց հավերժական գույն ենք փոխանցում: Մեր մոլորակի անունը ձեր լեզվով մոտավորապես կլինի այսպես՝ Հավերժական գույների մոլորակ: Լա՞վ է:
— Հրաշալի է:
Աղջկա երկնագույն աչքերը կայծկլտացին բավականությունից: Հանկարծ դաշտը ցնցվեց, ծաղիկները դալկացան, լորենին հրավառվեց, հորիզոնն ասես կրա-

կե լեզուներով պատվեց: Դա հյուսիսափայլ էր, աննկարագրելի տեսարան: Ինչպիսին երազում ենք տեսնում կամ հեքիաթներում կարդում:

— Իմ մայրի՛կն է,— ուրախ բացականչեց աղջիկը և շրջվեց դեպի ցոլանքը:

Հանկարծ անծայրածիր տափաստանը ողողվեց երաժշտության կախարդիչ հնչյուններով: Ես անզոր եմ վերարտադրելու այդ երաժշտությունը: Ինքներդ պատկերացրեք, որ տափաստանի բոլոր ծաղիկները դարձել են երաժշտական գործիքներ և հոգեզմայլ ու անչափ ախորժալուր հնչյուններ են արձակում: Դա բնության փառահեղ հիմն էր: Դա տիեզերքի արբունք էր: Դա Հավերժական գույների մոլորակի, երկու լուսատուների՝ միմյանց կարոտած մոր ու դստեր արտահույզ գրույց էր: Իմ առջև կրկին իմ ծանոթ, կապուտաչյա, զմայլելի աղջիկն էր:

— Մնաք բարո՛վ, հարգելի՛,— ասաց նա:

— Դու գնո՞ւմ ես,— թոթովեցի ես:

— Պետք է գնամ: Մայրս կանչում է:

— Ի՛նձ էլ տար, սիրու՛ն աղջիկ: Ի՛նձ էլ տար քո Հավերժական գույների երկիրը: Աղաչո՜ւմ եմ քեզ:

— Ես չեմ կարող քեզ տանել, ո՛վ մարդ,— աղջիկն ափսոսանքով տարածեց իր փոքրիկ ձեռքերը:

— Ինչո՞ւ,— վշտացա ես:

— Որովհետև մարդ ես մարմնական:

— Սպասի՛ր,— ասացի ու վեր կացա:— Մի՛ գնա,— խնդրեցի ես:

— Ձեզ ի՞նչ պատահեց, հարգելի՛,— հարցրեց աղջիկը, թեև զգաց՝ ինչ կատարվեց ինձ հետ:

— Ոչի՛նչ, քաղցրի՛կս: Ցտեսությո՜ւն:

— Մնաք բարո՛վ, հարգելի՛,— ձեռքը օդում շարժելով, պատասխանեց նա:

... Հետո ամեն ինչ նորից կրկնվեց, միայն թե հակառակ հաջորդականությամբ. աղջիկը նախ հսկայական յոթներանգ թիթեռ դարձավ, ապա՝ բյուրերանգ թավշյա շղարշ, հետո մրրիկի նման կտրեց անցավ տափաստանը: Նա, ասես, անսահման երջանկությունից պարող ու երգող դաշտի թագուհի՝ հեռանում էր ինձանից: Նա նման էր դաշտի բոլոր ծաղիկներին՝ առանձին-առանձին և միասին: Հետո, որպես անկրկնելի երազ, երգ ու գույների ցոլք, անէացավ երկնքի մովում...

Վրացերենից թարգմ.

ՀՐԱՉՅԱ ԲԱՅՐԱՄՅԱՆԸ



ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

## ՋՐԱԾԱՂԻԿԸ

Ջրածաղիկը
Գետի ջրում
Դողում, երերում է
Ու բուրում:
Ջրածաղիկը
Կանգնած լսում է
Ձուկն ու ձկնորսը
Ինչ են ասում:
Ձկնորսն ասում է. «Ջրածաղի՛կ ջան,
Լսի՛ր, թե ինչ եմ խնդրում ես քեզ,
Ուշադի՛ր եղիր, ձկնիկը որ գա,
Խնդրում եմ դու ինձ նշան անես»:
Ձկնիկն ասում է. «Ջրածաղի՛կ ջան,
Լսի՛ր, թե ինչ եմ խնդրում ես քեզ,
Ուշադի՛ր եղիր, ձկնորսը որ գա,
Խնդրում եմ դու ինձ նշան անես»:
Ջրածաղիկն էր
Գետի ջրում,
Դողում, երերում է
Ու բուրում:
Ու մեկը չկա
Նրան ասի,
Թե այդ երկուսից
Որին լսի:

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



ՊԱՎԵԼ ՂՈՒԿԱՍՅԱՆ

# Հանդիպում սահմանում

ՆԿ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Այդ օրը պատանի սահմանապահների պարապմունքը երկու ժամ ուշացավ։ Առաջին անգամ, և հարգելի պատճառով։ Հետո շարք կանգնեց ջոկատը։ Ուղեկալի հրամանատարը ցուցաբերած արիության ու զգոնության համար շնորհակալություն հայտնեց և «Պատանի սահմանապահ» կրծքանշանով պարգևատրեց ջոկատի անդամներ, 8-րդ դասարանցի Ռուբիկ Հարությունյանին, Խաչիկ Խաչատրյանին և Յուրա Կեսոյանին։ Պատանիներն արժանացան նաև կոմերիտական պատվոգրերի։

... Սերժանտ Ալյոշա Եգորովը լենինյան մանյակի պատուհանից նորից հայացք ձգեց գյուղից ուղեկալ ձգվող ճանապարհին։ Դեռևս 10—12 րոպե կար պատանի սահմանապահների ջոկատի պարապմունքների սկսվելուն, բայց Ալեքսեյն անհանգստանում էր, որովհետև պատանի մարտիկները միշտ տեղ էին հասնում 30—35 րոպե շուտ։ Սերժանտը դրա համար հաճախ նախատում էր տղաներին. ծառայության ժամանակ պահանջվում է մարտական ճշտապահություն՝ ո՛չ շտապել, ո՛չ ուշանալ։

Սերժանտին ուրախացնում էր, որ Ռուբիկը, Խաչիկը, Արթուրը, Արմենը, թեև ընդամենը 7—8-րդ դասարանների աշակերտներ, բայց մարտական և քաղաքական պատրաստականությամբ չէին զիջում ուղեկալի փորձառու մարտիկներին։ Ալեքսեյ Եգորովին դուր էր գալիս տղաների հաստատակամությունը, աշխատասիրությունը։

Սերժանտը գիտեր, որ ջոկատի 17 պատանիներն էլ հավատում են իրեն։

— Եգո՛րով, հերիք երազես, նայի՛ր, ջոկից փախածներդ են գալիս։

Հերթապահ Վիտյա Սերեբրյաննիկովն էր նախ նկատել փոքրամարմին, սևուկ Խաչիկին, որը թողած ուղիղ ճանապարհը՝ ուղեկալ էր շտապում իրեն հայտնի արահետներով։

«Դրա համար պատասխան կտաս»,— մըտքում չարացավ Ալեքսեյը...

Իսկ ո՞ւր էին մյուսները։

Այդ պահից սկսած դեպքերը գլխապտույտ արագությամբ հաջորդեցին միմյանց։ Խաչիկը քրտինքի մեջ կորած հազիվ շունչը ետ

բերելով, ցածրաձայն, հուզված ինչ-որ բան շշնջաց սերժանտին: Եգորովն էլ առանց մի վայրկյան հապաղելու՝ շտապեց ավագ լեյտենանտ Ս. Կոնոպլյովի մոտ: Եվ ուղեկալից ավտոմեքենայով դեպի սահմանամերձ գոտի սլացավ սահմանապահների հերթապահ ջոկատը: Նրանց հետ էր նաև 8-րդ դասարանցի Խաչիկ Խաչատրյանը:

Երկու ժամ անց ուղեկալում և գյուղում բոլորին հայտնի կդառնա դեպքը, ամենայն մանրամասնությամբ, որը կատարվեց դպրոցական արձակուրդի վերջին օրը:

Պատանի սահմանապահներ Ռուբիկին և Խաչիկին այդ օրը հյուր էր եկել Յուրան, և անպայման ցանկանում էր մասնակցել ջոկատի պարապմունքներին, որովհետև տղաները շատ հետաքրքիր բաներ էին պատմել նրան իրենց առօրյայից:

Մինչև պարապմունքի սկիզբը 2 ժամ կար: Խաչիկն առաջարկեց լողալու գնալ: Յուրան այդ ժամանակ չգիտեր, որ փոքրիկ լճակը այդքան մոտ է սահմանամերձ գոտուն: (Եվ ի՞նչ իմանար, որ կես ժամ անց արդեն իրեն են նախանձով նայելու ոչ միայն Խաչիկն ու Ռուբիկը, այլև ջոկատի մնացած 15 անդամները):

— Այստեղ արդեն «հյուրեր» կան,— առաջինը հեռվից նկատելով լճակի մոտ, ծառերի ստվերում կանգնած երկու երիտասարդ մարդկանց, ասաց Յուրան և հեգնանքով դիմեց ընկերներին,— գուցե սահմանախախտնե՞ր են, հը՞,— և չսպասելով պատասխանի, ձայն տվեց.— Հե՜յ, ջուրը սա՞ռն է:

Երկուսը չլսելու տվեցին կամ չցանկացան պատասխանել:

Յուրան չնկատեց, թե ինչպես ընկերները արագ ինչ-որ բանի մասին պայմանավորվեցին, և Խաչիկն աննկատելի չքացավ: (Միայն հետո Յուրան իմացավ, որ ընկերները առաջին իսկ հայացքից կասկածել են անծանոթներին: Ռուբիկը պետք է ամեն գնով ձգեր խոսակցությունը, մինչև Խաչիկը հասներ ուղեկալ):

Չնայած համառ ջանքերին, Ռուբիկին այդպես էլ չհաջողվեց «ծանոթանալ» երկուսի հետ: Անծանոթները արդեն պատրաստվում էին հեռանալ: Ուրիշ ելք չկա, տղան նետվեց նրանց կողմը: «Խոսակցությունը» կարճ տեվեց: Դժվար է ասել՝ վերջին հաշվով ինչ ելք կունենար այդ, եթե ժամանակին տեղ չհասնեին սահմանապահները, նրանց հետ՝ սերժանտ Եգորովը և արագաշարժ Խաչիկը: Քսան րոպեից սահմանախախտները ուղեկալում էին:

## ՊԱՏՄՈՒՄ ԵՆ ՏՈՄՍԿԻ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



Մենք կազմակերպեցինք պլակատների մրցույթ: Թեմաներ էին տրվել էլեկտրականության և ջրի խնայողության վերաբերյալ: Լավագույն պլակատները չմնացին պիոներական սենյակում, այլ իրավունք նվաճեցին փակցվելու շենքերի վրա և խանութներում: Վերջերս տեսա, որ մեր պլակատը դեռ չէին հանել կաթի խանութի պատի վրայից:

Անցկացրինք հավաք «Սովորիր սովորել» թեմայով: Մենք մանրակրկիտ կերպով պատրաստվում էինք այդ հավաքին: Հաշվեցինք այն րոպեները, որ իզուր կորչում են, երբ դասի ժամանակ աննպատակ դիտում ես հարևանիդ կամ նայում պատուհանից դուրս: Րոպեները բազմապատկվելով օրերով և ամիսներով, վերածվեցին ժամերի և արդյունքները այնքան տպավորիչ էին, որ այլևս ոչ ոք չէր ծիծաղում հաշվառող պիոներների վրա: Հետո նրանք գնացին մեր ծնողների աշխատանքի վայրերը: Այնտեղ իմացան, թե քանի րոպե է պահանջվում որոշակի դետալի պատրաստման համար, ինչպես են մեծերը տնօրինում իրենց աշխատաժամանակը: Մենք շատ հետաքրքիր հետևություններ արեցինք այդ ամենից, իսկ ոմանք էլ ստիպված եղան լրջորեն խորհել:

ԼԻԱՆՆԱ ՏՐՈՖԻՄՈՎԱ, № 24 դպրոց, քաղաքային պիոներական շտաբի անդամ

## ԿԱՐՄԻՐ ԳԼԽԱՐԿՆԵՐ

Մեր ավագ ջոկատավար Նատալյա Լոբանովան մոլի տուրիստ է: Մենք՝ բարձր

դասարանցիներս՝ նույնպես: Մեր դպրոցում բոլորն ունեն «Պատանի տուրիստ» կամ «ՍՍՀՄ տուրիստ» կրծքանշաններ:

Ջոկատավարները ցածր դասարաններում կազմակերպում են տուրիստական խմբակներ: Փոքրերը հիմնականում գնում են մարզի գյուղերը՝ բանահյուսություն հավաքելու: Սարերը բարձրանալ թույլատրվում է միայն տասնչորս տարեկանից: Մեր երթուղիները շատ են՝ Միջին Ասիա, Լեռնային Ալթայ, Տյան-Շան: Ի պատիվ պիոներական կազմակերպության 60-ամյակի, մեր ջոկատը, Նատալյա Լոբանովայի հետ միասին բարձրացավ Պիոներական լեռնանցքը: Մենք այնտեղ թողեցինք պատվադրոշ և գրություն: Շատ հետաքրքիր էր մեր երեքօրյա արշավը 5-րդ բանակի անցած երթուղով, որը Կոլչակի զորքերից ազատագրել էր մեր երկրամասը: Մի բան է պատմության դասագրքեր կարդալ, իսկ ուրիշ բան, երբ ինքդ ես դահուկներով գնում այդ պատմության հետքերով: Արշավի դուրս եկան 55 հոգի, բայց եղանակը վատացավ: Քամի բարձրացավ և սկսեց ձյուն տեղալ: Երկու օրից որոշվեց, որ արշավը կշարունակեն միայն ամենադիմացկունները: Նպատակակետին հասան 19 հոգի:



Սկզբում մեր ջոկատավարների ջոկատը կրում էր «Քամիների վարդ» ռոմանտիկ անունը: Բայց երեխաները արշավների ընթացքում մեզ տվեցին «Կարմիր գլխարկներ» անունը, որովհետև մենք կրում ենք գործած կարմիր գլխարկներ: Սկզբում մենք դեմ էինք, իսկ հետո ընտելացանք: Ի՞նչ արած:

Ճիշտ են նկատել:

ՎՈԼՈԴՅԱ ԱԿՈՒԼՏՍԵՑԿԻ, № 12 դպրոց, 5-րդ դասարանի ջոկատավար

# «ՍԻԲԻՐԻ ՄԱՐԳԱՐԻՏԸ»

**Մենք հաճախ ենք ասում, որ պետք է ոչ միայն քո, այլև բոլորի համար ինչ-որ լավ և օգտակար գործ անես: Եվ** որոշեցինք քաղաքին օգնելու համար մայրիներ տնկել:

Մայրին համարվում է «Սիբիրի մարգարիտը»: Դա մի զարմանալի ծառ է, հզոր և հպարտ: Այն պտղավորվում է 300—400 տարի: Մայրու փայտանյութը, յուղը և սերուցքը արժեքավոր հումք են: Մայրին մաքրում է օդը: Մայրի ծառերի անտառում կան սամույրներ, սկյուռներ, մշկայծյամներ, վարազներ և արջեր:

Նայիր քո մատիտներին, դրանք բոլորն էլ պատրաստված են մայրու փայտից: Շատ հավանական է, որ քո մատիտը պատրաստված է այն մայրուց, որն աճել է մեզ մոտ:

Մայրին կտրում են մեծ քանակությամբ: Այդ պատճառով կարևոր է պահպանել մայրու անտառը և տնկել նորը: Իսկ մայրի աճեցնելը շատ դժվար է: Հայտնի անտառագետ Մորոզովը ասում է, որ դա «համբերության դպրոց է»:

Իր բարձրությամբ միամյա մայրին մի փոքր մեծ է լուցկու հատիկից, իսկ երեքամյա մայրին փոքրիկ ճյուղ է: Յուրաքանչյուր պիոներ քաղաքից դուրս այդպիսի 40—50 փոքրիկ ծառ է տնկել:

Երբ մենք կդառնանք տատիկներ և պապիկներ, այն ժամանակ մեր անտառը նորնոր կմեծանա:

ՍՎԵՏԱ ՏԱՐՈՒՆԻՆԱ,
№ 18 դպր. դրուժինայի խորհրդի նախագահ

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ



ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ

# ՀԵՐԱԿԼԵՍԻ ՄԵԾԱԳՈՒՅՆ ՍԽՐԱՆՔԸ



Նկ. ԳԱՍՏԵԼԼՈ ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

Աղմետոսը փթթուն, կենսախինդ, ջահել տղամարդ էր, մտքերով, հոգով, ձգտումներով շատ հեռու մահվան գաղափարից, արդեն մոռացել էր Ապոլոնի պատգամը կամ նրան թվում էր՝ իր օրհասն այնքան է հեռու, որ շատ վաղ է դրա մասին մտածելը, և մի երեկո աղջամուղջի մեջ իր դեմ տեսավ Թանատոսի ժանտ կերպարանքը: Մարմինը պատեց մանր սառը քրտինքով, մահվան աստծո ակնախոռշերից նրան էին նայում հա-

վիտենական խավարի երկու անտակ անդունդներ և այդ խորություններից գերեզմանային սառնություն էր փչում: Սև, գիշերանման թևերը թիկունքին ծալած,ահավոր թուրը մի ձեռքին, նա մյուս ձեռքը դանդաղ դեպի Ադմետոսի մազերն էր տանում:

— Մի՞թե հենց հիմա:

— Հիմա:

— Բայց ես դեռ երիտասարդ եմ:

— Մահը կույր է,— ասաց Թանատոսը:

— Ես նոր եմ կյանք մտնում:

— Մահը հենց դրանով է սոսկալի:

— Տար ծերերին, անբույժ հիվանդներին, տար վատթարներին ու անարժաններին:

Ադմետոսը մտածեց իր ջահել կնոջ՝ Ալքեստիդեի և զավակների մասին և հառաչեց. «Ո՞ւմ եմ թողնում ձեզ, իմ սիրելինե՛ր,— ասաց նա ինքն իրեն:— Նրանք այդքան երջանիկ չլինեին իրար հետ, այդքան սիրելի մի կին և այդքան սիրասուն զավակներ: Նրանց կյանքում լինեի մի դժբախտ ու անհաջողակ մարդ, լինեի հիվանդ, ցավերից տառապող՝ մահը միայն հանգստություն կբերեր, լինեի աննշան ու անարժան մի մարդ՝ թերևս այսքան ծանր չլիներ կյանքից բաժանվելը, երանի թուրը ձեռքիս ընկնեի իմ երկրի թշնամիների դեմ մաքառելիս կամ վայրի գազանների դեմ պայքարելիս, ահավոր վարազը թող իր ժանիքը խրեր լյարդիս մեջ կամ առյուծը լափեր սիրտս, երանի՜ չվերադառնայի արգոնավորդների հետ հեռավոր Կողքիս ճամփորդելիս... Բայց ավա՜ղ...»

— Ո՜վ անմահների և մահկանացուների ատելի Թանատոս,— ասաց Ադմետոսը,— հեռո՛ւ տար քո սուրը և մի՛ կտրիր իմ մազափունջը, չէ՞ որ իմ հովանավոր ու սիրելի Ապոլոնը շնորհ է արել ինձ՝ այս ժամին օրհասս վանելու, եթե մեկը կամովին հանձն առնի իր կյանքն ինձ զոհաբերելու: Ժամանա՛կ տուր ինձ, գուցե համայն Փերեում գտնըվի մեկը, որ կսիրի ինձ այնքան, որ կամովին հանձն կառնի իմ փոխարեն Հադեսի հավիտենական խավարի աշխարհն իջնելու:

— Ո՜վ Ադմետոս,— ասաց մահվան դժընդակ աստվածը,— հիրավի դու միակ մահկանացուն ես, որին աստվածներն արել են այդ մեծագույն շնորհը: Ես հեռանում եմ քեզանից ու կսպասեմ ըստ պայմանի: Եթե ոչ ոք հանձն չառնի իր քաղցր կյանքը քեզ նվիրելու, ես կրկին կհայտնվեմ քո գլխավերևում և այս անգամ այլևս ոչինչ չի պահի ինձ: Բայց իմացի՛ր, մեծագույն փորձության ես ենթարկում քո սիրելիներին, հարազատներին ու ընկերներին. կա՞ մի սահման, որից այն կողմ մարդկային սերը, որքան էլ մեծ լինի ու նվիրական, անհնարին է, որ անցնի: Մահն ամենուր է: Խե՜ղճ մահկանացուներ, ապրելու ձեր տենչը վեր է ամեն ինչից: Երգերում գովերգված ու աստվածացված ձեր սերն անգամ անզոր է նրա դեմ... Ես ծարավի եմ քո արյան: Որքան երիտասարդ, գեղեցիկ ու սիրված մարդ է իմ զոհը, այնքան գոհ եմ ես՝ զարհուրելի աստվածս մահվան: Ինչպես ամեն ոք, ես ևս հպարտ եմ՝ ամենազոր, ամենահաղթ և ամենամեծ զգալով ինձ.... Բայց ես սիրում եմ ձեզ, մահկանացունե՛ր:

— Ինչպե՞ս կարող է մահը սիրել կյանքը:

— Չլիներ կյանքը, չէի լինի նաև ես:

— Բայց ինչո՞ւ ես դու տանում ջահել, վաղվոուն պատանուն, երբ նա պլանում է իր մարտակառքին և լի է հաղթելու ու իր հաղթանակով ցնծալու գեղեցիկ տենչերով:

— Երբ նա պլանում է մարտակառքի վրա, նրա մարտակառքի սռնու մեջ, որ փայտից է, մահն է բույն դրել այն օրից, երբ այդ փայտը դեռևս կանաչ մի ծառ էր և կտրեցին նրան սռնու համար: Տաշեցին, հղկեցին և ճարպով օծելով՝ ամրացրին մարտակառքին: Եվ սռնու մեջ այդ մահը, որ մի ոստ էր, սնվելով, աճելով՝ մի օր մահ է բերում սըռնուն, նա մեղավո՞ր է, որ դա լինում է մրցման օրը: Սռնին է, որ մահանում է: Ապա ջախջախվում է մարտակառքը և նրա հետ կործանվում է ձիավորի մատղաշ ոգին: Ձեր մահը միշտ ձեզ հետ է, ձեր կողքին, քարի մեջ է, դանակի մեջ, խմած ջրի մեջ: Եվ քո մահն, Ադմետո՛ս, այն կաղնու մեջ էր, որ աճում էր Թեսալիայի թավուտ անտառում և մի օր կտրեցին քո մարտակառքի համար... Ցտեսություն, Ադմետո՛ս, ես կհայտնվեմ քո կյանքի ամենաուրախ օրը, երբ հատկապես դժվար է լինում հավատալ, որ բաժանվում ես հավիտյան...

Ադմետոսը զգաց, որ շուրջն աստիճանաբար նոսրանում է խավարը, աղջամուղջը ցնդեց և իր գլխավերևում նա տեսավ կապույտ երկինքը. նոր միայն հիշեց, որ վայրկյան առաջ սլանում էր իր մարտակառքի վրա, նժույգները քամու մեջ ճախրում էին, իրենից կես աղեղ ետ էր ամենավտանգավոր իր մրցակիցը՝ Յազոնը, նրանից նույնքան ետ էր երկրորդ մրցակիցը, նա չէր կարողանում հասկանալ՝ ով է դա, իսկ բոլոր մյուս մրցակիցներն այնքան հեռվում էին արշավում, որ նրանց մարտակառքերի անիվների դղրդոցն անգամ չէր հասնում իրեն: Առջևում բաղձալի սյունն էր, մտրակել պետք չէր, մտրակի ստվերն անգամ ավելորդ էր, ձիերը սլանում էին թևավոր...

Մի փոքր քարակտոր, որ հանկարծ շարժում դարձած ճանապարհի քառուղում միայն մի ակնթարթ ընկավ նրա առջև, անմիջապես պահ մի անգամ ևս սպիտակին տվեց ձիերի սմբակների տակ, ապա զգաց ուժգին ցնցում, հասկացավ, որ սռնին ջարդվեց, ձախ ակը պոկվեց և գլորվելով առաջ անցավ մարտակառքից, ապա ընծուղների միմյանց վրա թավալգլոր թափվելն ու ջախջախված մարտակառքի փայտեղենի մեջ իր ընտվելն էր հիշում ու կողքից սլացող Ցազոնի մարտակառքի հողմի հարվածը:

Թանատոսի երևութանալը ցնորք չէր, հասկացավ, որ դեմառդեմ տեսել է իր սեփական մահը: Եվ Ադմետոսը սոսկաց: Աստիճանաբար ցնդեց խավարը, տեսավ, որ կաղնու տակ է, ընկերներով շրջապատված, իր կառավար Լիպարիտը հեկեկում էր՝ ընկերոջ գլուխը ծնկներին դրած, հավանաբար նրան մեռած կարծելով: Բայց լույսը ցերեկվա լույսը չէր, աղմուկով հավաքվում էին մարդիկ, մոտերքում ինչ-որ տեղ պայթող թոքերով շընչում էին մրցումն ավարտած ընծուղները:

Առվակից ջուր բերին, Ադմետոսի դեմքից լվացին արյունը, նա ոտի ելավ և առաջինն ինքը շնորհավորեց պատանի հաղթողին, ապա ասաց.

— Բերե՛ք իմ մարտակառքի սռնին և թող նա էլ շնորհավորի Ցազոնին:

Ադմետոսը նորից ապրում էր, սակայն այդ օրվանից չքացավ նրա ուրախությունը, նրա հոգում այլևս բույն էր դրել մահվան տագնապը, չգիտեր այս լույս օրվա մեջ, այս պայծառ արևի տակ իրեն ինչ կարող էր պատահել, բայց գիտեր, որ պիտի պատահեր, չգիտես մահը որ քարի, կոճղի, որ քայլիդ մեջ է դարանակալ:

Նա այլևս մարտակառք չբարձրացավ: Եվ դա այն հերոսն էր, որ հռչակվեց համայն հունական աշխարհում, երբ իր հարսանիքին ներկայացավ մարտակառքին ամեհի վայրի վարազին և շրջապատը մռնչյուններով թընդացնող առյուծին լծած և հենց դրանով էլ շահեց Ալքեստիդեի ամուսինը դառնալու մեծ պատիվը:

Ադմետոսը խորը թախիծի մեջ էր. «Ինչու՞ Ապոլոնն ինձ այդ շնորհը արեց,— խորհում էր նա,— մի՞թե մահկանացու մարդուն այլեւի լավ չէր չիմանալ իր մահվան ժամը, մահն ընդունել մարտի դաշտում, որևէ մեծ սխրանք կատարելիս կամ անկողնում, հիվանդություններից: Այդպես էլ դատապարտված եմ ինքս իմ սեփական վախճանը ողբալու, երբ օրերս այլևս հաշված են և գիտեմ, որ փրկում չկա: Իմ խե՜ղճ Ալքեստիդե, իմ խե՜ղճ որբուկներ, ո՞ւմ եմ թողնելու ես ձեզ»:

Ալքեստիդեն օրեր ու գիշերներ մխիթարում էր նրան, սակայն ինքն էլ անմխիթար էր:

Ադմետոսը Թեսալիայի ամենամեծ հերոսն էր, նրան սիրում էին, բայց մի՞թե կարող էին նրան սիրել իրենց կյանքից ավելի: Բոլորն էլ կառչած իրենց գոյությանը, երջանիկ են թե դժբախտ, բոլորի աչքին էին սիրելի ցերեկվա լույսը և ատելի Հադեսի հավիտենական խավարի գիշերները: Ինքը՝ Ադմետոսը, երբեք չի դիմի ոչ մեկին այդ խնդրանքով, համարելով դա դաժան ու անմարդկային: Նրա հայացքից ձիավորները խուսափում էին, չէին ցանկանում ուղիղ նայել նրա աչքերի մեջ: Ինչի՞ համար էր այս փորձությունը, ինչո՞ւ Ապոլոնը բացեց մարդկանց մեջ այդ ահավոր անդունդը:

Ալքեստիդեի հրամանով ամենուր մունետիկները շրջում էին ժողովրդի մեջ և կամավորներին առաջարկում նրանց ժառանգների համար բազում այգիներ, արոտավայրեր ու չհնձված արտեր, բայց ամենահետին չքավորն անգամ չէր ցանկանում ուրիշի համար զոհաբերել իր կամ իր մերձավորի կյանքը, թեկուզև այդ զոհաբերությունը բոլորին սիրելի Ադմետոսի համար լիներ: Ամենածանր հիվանդները վերջին շնչում հրաժարվում էին կյանքի չնչին մնացորդն անգամ ուրիշին շնորհել, այդքան քաղցր էր բոլորի համար ապրելը: Վարձկան զինվորները, որոնք պատրաստակամ վտանգի էին ենթարկում իրենց կյանքը, նույնիսկ նրանց անիմաստ էին թվում այդ պարգևները, քանի որ ոչ մի զինվոր համոզված չէր, թե ճակատամարտում կընկնի հենց ինքը, չնայած հարյուրներով ու հազարներով էին կոտորվում:

Բոլորը նույնն էին ասում.

— Թող ծեր Փերատոսը, որ վաղուց պիտի հոգին ավանդած լիներ, իր զառամյալ կյանքի վերջին օրերը զոհաբերի իր միակ որդուն: Եվ դա կլիներ ամենամարդկայինը, բոլորի ցանկալին: Եվ ապա թե՝ դրանով մեծ բարիք արած կլիներ ոչ միայն արքայազնին, այլև երկրի բոլոր ապրողներին:

Օրերն անցնում էին, դրանք ահավոր օրեր էին, հաշված օրեր: Ալքեստիդեն համոզում էր, սակայն Ադմետոսը հրաժարվում էր հոր մոտ գնալ այդ խնդրանքով.

— Անվայել է կյանք խնդրել ծնողից, որը մի անգամ արդեն ինձ կյանք է պարգևել, թեկուզ և այդ ծնողը լինի զառամյալ ծերուկ: Ապա, ես ինչպե՞ս ապրեմ, երբ ամեն օր պիտի մտածեմ, թե ինչ գնով եմ ապրում: Ես իմ հոր մահվան պատճառը չեմ կարող դառնալ:

Այնժամ Ալքեստիդեն ասաց, թե ինքը կգնա

նրա մոտ և ծնկաչոք կխնդրի նրան:

— Նա այնքան ծեր է, որ թերևս հենց այս գիշեր ավանդի հոգին: Նա բարի է, ճա հայր է:

Ադմետոսն արգելեց նրան այդ բանն անել, բայց կինը չլսեց նրան:

Արքան ուղղելով Ալքեստիդեին, մռայլվեց, ասաց.

— Դա ի՞նչ խնդրանք է, դա ի՞նչ անամոթություն է, գալ առողջ մարդու մոտ ու խնդրել, որ նա իր կյանքը զոհաբերի ուրիշի համար:

— Ինչո՞ւ ուրիշի, հարազատ որդու համար: Նրա օրերը հաշված են, հայր:

— Բոլորս ենք մահկանացու և բոլորիս օրերն են հաշված:

— Նրանը շատ ստույգ է: Ո՜վ հայր ու թագավոր, ողջ Փերեն է իմանում դա:

Արքան խնդաց.

— Լավ է հորինված, շա՜տ լավ է հորինված: Հասկանում եմ ձեզ, հասկանում եմ, զավակնե՜րս: Նա ցանկանում է թագավոր դառնալ, դու ցանկանում ես թագուհի լինել, հասկանում եմ...

— Դա Ապոլոնի պատգամն է, ո՜վ հայր ու թագավոր, քեզ նույնպես հայտնի է:

— Դուք իմ մահն եք ցանկանում, ամբողջ երկիրը սգի մե՞ջ եք ուզում ձգել: Իսկ, ի՞նչ է, իմ տերության մեջ չգտնվե՞ց մեկը, որ իր կյանքը նվիրաբերեր արքայազնին, մի՞թե այդքան սիրված չէ ժողովրդից նրա ապագա արքան:

— Դա միայն հարազատ մարդը կարող է անել:

— Եթե ես ունենայի նույն պատգամը, իմ հպատակներից հազարավորներ սիրահոժար կզոհաբերեին իրենց քաղցր կյանքը սիրելի արքայի համար: Հասկանալի է, որ նրան այնքան էլ չեն սիրում:

Ալքեստիդեն նետվեց արքայի առջև և նրա ծնկները գրկելով այնպես աղիողորմ լաց եղավ, որ արքան նույնպես հուզվեց.

— Ա՜խ, ինչո՞ւ չկա նրա մայրը,— ասաց նա:— Ահա ի՞նչ է նշանակում այս նեղ օրերին հարազատ մայր չունենալը: Նրա մայրը՝ իմ սիրելի թագուհին, առանց այն էլ վատառողջ կին էր, նա կհամաձայներ զոհաբերել իր կյանքը, որն այլևս անտանելի էր դարձել նրա համար և օր էր հաշվում, թե երբ պիտի մեռնի, ազատվի ցավերից: Իսկ ես... Ինձ ի՞նչ է եղել, որ... Ես դեռ երկար եմ ապրելու: Իսկ գուցե ես անմահ եմ, ով գիտի:

— Ո՜վ արքա ու հայր, խնայի՛ր որդուդ ջահել ու բողբոջ կյանքը, խղճա՛ ինձ, մեր



անմեղ զավակներին, որոնք մի քանի օր անց այլևս չեն տեսնելու իրենց սիրասուն հորը: Չէ՞ որ դու էլ ծնող ես և քո սիրտը նույնպես սոսկում է քո զավակի կորուստից: Դու արդեն ապրել ես և ապրել ես բավականին երկար ու երջանիկ: Դու մեր միակ հույսն ես:

— Ճակատագրի աստվածները բոլորովին այլ կերպ են տնօրինում մարդուս ճակատագիրը, և լինում է, որ ծեր կոճղի վրա շատ ու շատ մատղաշ շիվեր են կացնոտվում:

— Դու չես մտածում, թե ինչ է սպասում քո որդուն, քո հարազատ որդուն...

Երբ արքան մի պահ պատկերացրեց, թե մի քանի օր անց մահվան աստվածը կըհայտնվի ոչ թե ուրիշի, այլ իր գլխավերևում, իր ծնկներից պոկեց Ալքեստիդեի ձեռքերը և սարսափահար վեր թռավ տեղից:

— Հեռացի՛ր ինձնից, ո՛վ անմիտ ու անխիղճ կին,— աղաղակեց նա:— Տեսնվա՞ծ է, լվա՞ծ է, որ մարդուց նրա կյանքը խնդրեն: Ի՞նչ սերունդ է, ի՞նչ բարքեր են:

Զայրույթից ու վախից նրա խախուտ կզակը կախվել էր, ջրածոր աչքերը մշուշվել էին, հազիվ էր շնչում և նրա ոտքերը դողահար ցնցվում էին, երբ ծառաների օգնությամբ անցնում էր իր ննջասենյակը:

Ալքեստիդեն հուսահատությունից նույնիսկ դադարեց հեծկլտալ: Եթե ամուսնու միակ հարազատը հրաժարվում է, ուրեմն այլևս ոչ մի հույս չմնաց:

Ահա այդ տագնապալի օրերին էր, որ Հերակլեսի ժամանման լուրը եկավ: Ադմետոսը խստորեն կարգադրեց բոլոր ընկերներին, ծառաներին ու աղախիններին՝ երբեք չհայտնել հյուրին, թե ինչ է սպասում իրեն՝ Ադմետոսին: Հերակլեսը ընկերոջն այցի էր գալիս ոչ թե սգի ու լացի համար, այլ խրախճանքների, տոնախմբության և ուրախության համար, թող ոչնչով չմթագնի հյուրի ժամանցը:

— Հերակլեսի միակ սիրած գիրքը,— ասաց Ադմետոսը ծառաներին,— խոհարարական գիրքն է: Ուրեմն, այնպես ծառայեք իմ հյուրին, որ նա գոհ մնա ձեր գործից:

Ողջ ժողովուրդն էր եկել նավահանգիստ՝ դիտելու մեծագույն հերոսին և դժոխային շանը՝ Քերբերին, որ նա բերում էր իր հետ:

Երեկոյան կողմ բաց ծովի մշուշներում երևացին սպիտակ ու կանաչ առագաստները և հեռուներից մարդկանց ականջին հասավ դժոխային շան կաղկանձը, և դա այնքան ահազդու ու ահավոր էր, որ ոմանք չդիմացան, սոսկումով փախան, իսկ երբ զարհուրելի բեռով նավը ափ հասավ՝ մոտիկից տեսնողներն ուշաթափվեցին: Համարձակները չըգիտեին՝ հսկա մարդո՞ւն նայեն, թե՞ եռագլուխ շանը, որի նայվածքներին միայն ամենախիզախներն էին կարողանում դիմանալ: Անասելի իրարանցում էր, ոմանք գլուխները բռնած փախչում էին, ոմանք վազելով գալիս էին հեռուներից, մեկն ընկնում էր, մյուսը նրան տրորելով առաջ էր մղվում, լաց էր, ճիչ էր, ականջ խլացնող ժխոր:

Փերե քաղաքի բնակիչները հասկանում էին, որ իրենք միակ մահկանացուներն են, որ սեփական աչքերով երկրի երեսին տեսնում են Քերբերին: Իրենցից առաջ և իրենցից հետո բոլոր մահկանացու մարդկանց վիճակված էր միայն մեկ անգամ հանդիպել նրան՝ հանդերձյալ աշխարհ մուտք գործելիս, դժոխքի դարպասների մոտ, որի մուտքը հսկում էր այդ դժնդակ կենդանին, որպեսզի այնտեղից դուրս եկող չլինի:

Փերատոս արքան խորհում էր, որ քաղաքական իմաստով բարենպաստ է, որ Փերե է ժամանում Հերակլեսը, դա կբարձրացնի իր թագավորության հեղինակությունը, բայց և ահավոր է նա իր դժոխային բեռով՝ Քերբերով: Նավահանգստի կողմից լսվող ժխորից ու աղմուկից հասկանում էր ինչ է կատարվում այնտեղ, եկողները սարսափահար պատմում էին, որ վախից կարելի է քարանալ, այնքան զարհուրելի ու զազրելի է դժոխքի պահապանի կերպարանքը:

Արքան ասաց.

— Բերե՛ք մարտակառքս, ես պետք է իմ աչքերով տեսնեմ,— գիտեր, որ պիտի արգելեին և արգելեցին:

Ձայներից և աղմուկից հասկացվեց, որ ամբոխը ծովեզրից դեպի պալատներն է շարժվում: Ողջ քաղաքը եռում էր, վազվզոց էր, գոռում-գոչյուն, առջևից գնում էին Հերակլեսն ու Ադմետոսը, ապա քաղաքի նշանավոր մարդկանց զավակները, հետո Հերակլեսի նավաստիները ու ընկերները, բոլորից վերջում քարշ էին գալիս քաղաքի ետնատների բնակիչները, աղքատները, մուրացիկները, հաշմանդամները: Եվ այդ բոլորի մեջ իր վիթխարի հասակով բլրացել էր Հերակլեսի ամեհի կերպարանքը, նա Կիթերոնյան առյուծի մորթին թիկնոցի պես գցել էր իր ուսերին, թևերը կապել, հանգուցել կրծքի վրա, իսկ առյուծի գլխի մորթին գանգոսկրի հետ հանած՝ իբր սաղավարտ ծածկում էր խիստ գանգուր ու ջահել նրա գլուխը: Նեմեյան անտառից հատած վիթխարի հացենուց ամեհի գուրզը ուսին՝ նա քայլում էր առջևից և նրա մեկ քայլը սովորական մարդու չորս քայլից էլ հեռու էր նետվում:

(շարունակելի)

ՎԱԼԵՐԻ ՍԵՅՐԱՆՅԱՆ

# Վանակատ,
## կամ սատանի եղունգ

Նախնադարյան մարդու բնակավայրերից և Հայկական լեռնաշխարհի հնագույն դամբարանադաշտերից հավաքվել է հրաբխային ապակուց՝ օբսիդիանից (վանակատից կամ, ինչպես ժողովուրդն է կոչում՝ սատանի եղունգից) պատրաստված գործիքների հարուստ հավաքածու: Դրանք տարբեր չափի և ձևի դանակներ են, քարե քերիչներ, կտրող և հատող գործիքներ, որոնք հուսալիորեն ծառայել են նեանդերթալցուն (նախամարդու տեսակ) վաղ անցյալի դաժան պայմաններում: Վանակատից հաճախ պատրաստում էին նաև զենքեր՝ կացին, նիզակների և նետերի ծայրապանակներ և այլն:

Ավելի ուշ դրանից պատրաստել են հայելիներ, արձանիկներ, կնիքներ և այլ իրեր: Միջին դարերում Եվրոպայում մոդայիկ էր կանաչավուն վանակատը. նրանից պատրաստում էին ոչ թանկագին զարդեր: Հետագայում, սակայն, պարզվեց, որ այդ կանաչավուն վանակատը «եկվոր» է՝ երկնաքար:

Վանակատն ապակե համասեռ հրաբխային ապար է: Առաջանում է թթվային բաղադրության մածուցիկ լավաների կարծրացումից: Նրանից պատրաստվում են սկահակներ, մոխրամաններ, գրասեղանի պիտույքներ, կրծքազարդեր, մատանու ակեր և այլն:

Հայաստանում վանակատի կուտակումներ հատկապես հանդիպում են հանգած հրաբուխների լանջերին (Արտենի, Հադիս, Գութանասար, Գեղասար, Սպիտակասար և այլուր): Դրանք հոսքերով ծածկում են ամբողջ լանջերը և առաջացել են հրաբխային ժայթքումներից:

Որոտանի հանքավայրում, Բազենկ լեռան լանջին վանակատի մեջ հաճախ հանդիպում են գնդաձև անջատումներ: Որոշ նմուշներում նկատվում են օքսիդացված վառ կարմիր եզրագծեր, որոնք լրացուցիչ դեկորատիվություն են հաղորդում օբսիդիանին: Համանման օբսիդիան է հանդիպում նաև Արտենի և Գեղասար լեռների լանջերին: Դրանցից կորզում են գեղեցիկ գնդիկներ, որոնք գրականության մեջ հայտնի են որպես «ապաչիների արցունքներ»:

Ջրաբերի (Աբովյանի մոտակայք) օբսիդիանը սովորաբար կոչում են խայտաբղետ վանակատ՝ այն բաղկացած է երկու տեսակի ապակիներից՝ սև և կարմրադարչնագույն. առաջինը տարբեր ձևի ու չափի բեկորներ են, երկրորդը՝ ցեմենտված զանգված: Ի տարբերություն սևի, կարմրադարչնագույն վանակատը սովորաբար անթափանց է:

Ոսկերչության մեջ հատկապես գնահատվում է մուգ վանակատը՝ արծաթափայլ կամ ոսկեփայլ երանգով: Այդ տեսակներն այդպես էլ կոչվում են՝ իրիզացնող կամ արծաթավուն, ոսկեփայլ: Հազվադեպ պատահում է երկնագույն կամ կապույտ երանգներով վանակատ:

Վանակատի պաշարները մեր հանրապետությունում գործնականում անսպառ են: Բայց երկրաբանները շարունակում են դրանց հետազոտումը, հին հրաբուխների գեղեցիկ նստվածքները՝ ոսկերչական տեսակները հայտնաբերելու նպատակով:

## ԻՐԵՆՔ ԻՐԵՆՑ ՄԱՍԻՆ

Ես մի ընկերուհի ունեմ, անունը Աննա: Մենք նույն դպրոցում ենք սովորում: Նա գերազանցիկ է: Լավ սովորելուց բացի, լավ ըն-



կերուհի է: Մենք միասին երաժշտական դպրոցում էլ ենք սովորում և միասին էլ տուն ենք գալիս:

Ձմռան օրերը կարճանում էին և երաժշտական դպրոցից վերադառնալիս արդեն մութ էր լինում:

Մի անգամ իմ երաժշտության ուսուցիչը երկար պարապեց մի տղայի հետ: Ես սպասեցի մինչև նրա հետ պարապմունքն ավարտեր: Աչքս գցում եմ լուսամուտին, տեսնում՝ մթնել է: Երբ հերթը հասավ ինձ, բավականին ուշ էր: Դասարանից դուրս եկա ու տեսա իմ ընկերուհի Աննան սպասում է ինձ: Ուրախությանս չափ չկար:

Այսքան ժամանակ սպասե՞լ է ինձ:

**ՆԱԻՐԱ ԱՎԱԳՅԱՆ**
Ստեփանավանի № 4 դպրոց, 6-րդ դասարանի աշակերտուհի

## Ի ՍԵՐ ԴԱՍՂԵԿԻ

Մենք սովորում ենք № 8 միջն. դպրոցի իններորդ դասարանում: Ամեն տարի մեր դասղեկ ընկ. Հակոբյանի հետ գնում ենք օգնելու Գետաշենի կոլտնտեսությանը: Սոխ ենք հավաքում: Արդեն մի քանի տարի է, ինչ աշխատելու համար մեր դասարանը Գետաշենի կոլտնտեսության կողմից արժանանում է պատվոգրի:

Վերջերս մեր դպրոցում կայացան ֆուտբոլի առաջնության դասամիջյան խաղեր: Մեր դասարանը հաղթանակներ տանելով, գրավեց առաջին տեղը: Եվ դպրոցի դիրեկցիայի կողմից արժանացանք պատվոգրի: Այդ խաղերում մենք ձգտում էինք հաղթել, ինչ-որ տեղ էլ ի սեր մեր դասղեկ ընկ. Հակոբյանի:

**ՎՈԼՈԴՅԱ ԳԵՎՈՐԳՅԱՆ**
Հոկտեմբերյան, 9-րդ ա դասարան

## ՄԱՍՆԱԳԻՏՈՒԹՅՈՒՆ ԸՆՏՐԵԼՈՒ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

# Գտիր քո տեղը



Մասնագետների հաշվարկներով, այսօր կա ավելի քան քառասուն հազար մասնագիտություն. քառասուն հազար հնարավոր ուղի, որոնցից կյանքի սեմին կանգնած մարդը կարող է ընտրություն կատարել: Այդ մասնագիտությունների դասակարգումը պատկերացում է տալիս այս կամ այն աշխատանքի պայմանների, պահանջների ու յուրահատկությունների մասին:

Դասակարգումը դպրոցականին կօգնի պատկերացնել, թե ինչ է իրենից ներկայացնում նրան հետաքրքրող աշխատանքը և ինչ է պահանջում նրանից: Հնարավորություն կտա ավելի ճիշտ գնահատել սեփական արժանիքներն ու թերությունները, կկարողանա ճշտել իր ապագա աշխատանքի ծրագիրը:

Գիտնականները առանձնացրել են հինգ տիպի մասնագիտություն:

Առաջին.— «Մարդ—բնություն»: Այստեղ միավորված են բոլոր այն մասնագիտությունները, որոնք կապված են հողի, բուսական ու կենդանական աշխարհի հետ:

Երկրորդ.— «Մարդ և տեխնիկա»: Սրանք այն աշխատանքներն են, որոնց միջոցով մարդը ստանում է նավթ, ածուխ, հանքաքարեր, հումքի տարբեր տեսակներ և նրանցից ստեղծում հաստոցներ, մեքենաներ, կահույք, հագուստ:

Երրորդ տիպի աշխատանքի առարկան մարդն է: Այս աշխատանքներում ընդգրկված են ուսուցիչները, բժիշկները, քննիչները, մատուցողները և այլն:

Մասնագիտությունների հաջորդ՝ չորրորդ տիպը «Մարդ-նշանային համակարգն» է: Այս տիպի մասնագիտություններ են ռադիստի, էլեկտրոնային հաշվիչ մեքենաները ծրագրավորողների, օպերատորների աշխատանքները:

Եվ վերջապես հինգերորդ՝ «Մարդ-գեղարվեստական կերպար»: Այստեղ համախմբված են դերասանի, կոմպոզիտորի, գրողի, ճարտարապետի, ձևավորողի մասնագիտությունները:

Աշխատանքի առարկան մասնագիտության տարբերիչ կողմերից մեկն է միայն: Հաջորդը աշխատանքի նպատակն է: Որոշ մասնագիտություններում աշխատանքի նպատակը նյութական արժեքների ստեղծումն է (արտադրության բոլոր տեսակները), այլ մասնագիտություններում նպատակը ճանաչումն է, տարբերակումը, գնահատումը, ստուգումը (բժիշկ-ախտորոշող, ուսուցիչ, քննադատ, վերահսկիչ) կամ էլ՝ «որևէ բանի ստեղծումը ոչնչից» (կոնստրուկտոր, գիտնական-տեսաբան, ձևավորող և այլն): Իհարկե, աշխատանքի նպատակը «մաքուր» ձևով ոչ բոլոր մասնագիտություններում կարելի է առանձնացնել, ավելի հաճախ նրանք միակցվում, միահյուսվում են:

Մասնագիտությունների մյուս տարբերիչ կողմը աշխատանքի գործիքներն են: Նրանցից ամենահինն ու ավանդականը մարդկային ձեռքերն են: Մեր ժամանակը ստեղծել է աշխատանքի նոր գործիքներ՝ ավտոմատներ ու ամբողջական արտադրական ավտոմատացված համակարգեր: Դուք հավանաբար հեռուստացույցով տեսել եք այդպիսի համակարգեր ղեկավարող ապարատավարների: Ապարատավարը սոսկ «կոճակներ սեղմող մարդ» չէ, ինչպես կարող է թվալ առաջին հայացքից, նա որոշումներ է ընդունում: Եվ նրա որոշումներից է կախված ոչ միայն ամբողջ համակարգի անխափան աշխատանքը, այլև հաճախ գործարանի աշխատանքային ռիթմն ու բազմաթիվ մարդկանց անվտանգությունը:

Կան մասնագիտություններ էլ, որտեղ աշխատանքի գործիքը հենց մարդկային հատկանիշներն են: Օրինակ, դերասանի կամ դեգուստատորի (համտեսողի) մասնագիտությունները:

Պետք է ասել, որ մի շարք մասնագիտություններ ոչ թե մեկ, այլ մի քանի աշխատանքային գործիքների կիրառում են պահանջում: Բժիշկ-վիրաբույժը միայն «ոսկե ձեռքերով» չի վիրահատում. նա կատարելապես պետք է իմանա այն բազմատեսակ տեխնիկան, որը ժամանակակից վիրահատումների անբաժանելի մասն է:

Մասնագիտություն ընտրելիս անհրաժեշտ է հաշվի առնել նաև աշխատանքի պայմանները: Թեկուզ այն պատճառով, որ համեմատեք ձեր հնարավորությունները պահանջվող ծանրաբեռնվածության հետ:

Ոմանց համար ամենատհաճը զբաղմունքի միօրինակությունն է, ուրիշներն ընդհակառակը՝ դժվարանում են փոփոխվող, տարբեր աշխատանքներ կատարել: Մեկը այնքան ուժեղ չէ, որքան դիմացկուն, մեկ ուրիշը կարող է «սարեր շուռ տալ», բայց շուտ է հոգնում: Այս ամենը անպատճառ կառնչվի ապագա աշխատանքին:

Տեղին է հիշել Դոբրոլյուբովի ասույթը. «Անընդունակ մարդիկ չկան, կան ոչ իրենց գործով զբաղվող մարդիկ»:



# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԹԱՆԳԱՐԱՆ Է ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

## ԿԱՐՄՐԱՎՈՐ

Արագածն ու Արայի լեռը իրարից բաժանելով և կատաղի վերընթաց ռիթմ մտցնելով սարահարթի հանդարտության մեջ, ձգվում է Քասաղի անդնդախոր կիրճը: Կիրճի եզերքին , արթուն պահապանների նման ձիգ կանգնած են Սաղմոսավանքն ու Հովհաննավանքը: Կիրճից աջ, խորքում Փարպի գյուղն է: Երբ ծառերը ծաղկում են, գյուղը դառնում է հեքիաթային: Մի փոքր բարձունքի վրա Թարգմանչաց եկեղեցին է, որի միայն կողքի պատերն են պահպանվել, այն էլ՝ կիսավեր վիճակում: Ծառերն այնքան մոտ են աճել եկեղեցու պատերին, որ նրանց ծաղիկների թերթերը թափվում են եկեղեցու մեջ ու քարե հատակին նկարում են ընրբահյուս ժանյակ: Մի տեսակ թախծոտ մենակություն է բուրում այս փոքրիկ կիսավեր եկեղեցին: Ու թվում է, եթե հնարավոր լիներ եկեղեցիները բաժանել սեռերի, Թարգմանչաց եկեղեցին իգական պիտի համարվեր:

Այստեղից քիչ հեռու Ծիրանավորն է: Սա կարծես ոչ թե եկեղեցի, այլ ամրոց լինի, որտեղ պաշարված մարդկանց համար հուսալի պատվար է եղել մի ամբողջական քարից շինված ահռելի դուռը:

Աշտարակում՝ Մարինեն է: Նա իր համաչափություններով այնքան սլացիկ է ու նուրբ, որ կարծես նազող աղջիկ լինի:

Նրանից քիչ հեռու Կարմրավորն է, փոքրիկ հրաշքը, այնքան փոքր, որ թվում է, թե կարող ես գրկել:

Կարմրավորը յոթերորդ դարի եկեղեցիներից միակն է, որի կղմինդրյա ծածկը պահպանվել է: Ե՛վ դրսից, և՛ ներսից խաչաձև է: Ներքին տեսքը՝ ինտերյերը, այնքան ամբողջական է, որ կարծես ոչ թե կառուցված, այլ քանդակված է մի ժայռաբեկորից: Արտաքին տեսքի (էքստերյերի) արտահայտչականությունը մեծապես պայմանավորված է այն տուֆաքարի չափսերով, որով կառուցված է: Խոշոր չափսերի տուֆաքարը մոնումենտալ շունչ է հաղորդում այս գողտրիկ կառուցվածքին: Եթե կառուցված լիներ աղյուսից կամ փոքր չափսերի տուֆաքարից, կըթողներ բոլորովին այլ, անհամեմատ թույլ տպավորություն:

Ճինարարներն այստեղ օգտագործել են ճարտարապետական մի հնարանք, որ հայտնի էր դեռ հին եգիպտացիներին: Նրանք եկեղեցու պատերին հազիվ նկատելի թեքություն են տվել, որով և նրան տեսողական կայունություն են հաղորդել:

Դեռևս հին աշխարհի ճարտարապետները իրենց կառույցներում կիրառել են «Ոսկե հատման հարաբերություն» կոչվող օրենքը: Դա այն հարաբերությունն է, որի դեպքում դիտվող առարկայի համաչափությունները կատարյալ են:

(Այդ օրենքը գործում է ամենուրեք և վերաբերում է նաև մարդկանց: Կան համաչափ և անհամաչափ կառուցվածքի մարդիկ: Ասենք, հանդիպում են մարդիկ չափազանց երկար կամ չափազանց կարճ ոտքերով, ծիծաղելիորեն մեծ կամ ծիծաղելիորեն փոքր գլխով: Բայց և կան մարդիկ, որոնք, անկախ իրենց բացարձակ չափսերից, համաչափ են: Հանրաճանաչ կինոդերասանուհի Բրիջիդ Բարդոն փոքրամարմին է, իսկ Սոֆի Լորենը՝ հակառակը, բայց նրանք երկուսն էլ հրաշալիորեն համաչափ են):

Կարմրավորն, ահա, կառուցված է այդ օրենքով:

Նրա բակում հին-հին քարեր են՝ տապանաքարեր ու տապանաքար դարձած խաչքարեր: Արևամուտին դրանք տաքանում են ու բոցկլտում վառ գույներով: Ի՜նչ հաճելի է հպվել այդ գույներին: Նրանք արտացոլվում են մեր դեմքերին ու մեր դեմքերը դառնում են շիկավուն: Ու մեր հոգիները խոսում են վարպետների հետ, շատ դարեր առաջ ապրած վարպետների, որոնց ոսկե ձեռքերով են ստեղծվել այս նրբահյուս նախշերը:

Այստեղ՝ Հայկական Պարի ետևում մարում են արևի վերջին շողերը: Պատրանքը շուտով կցրվի: Կփչի սառը քամի ու քարերը կսառչեն: Կսառչեն-կմնան մինչև արևածագ:

Կարմրավորի բակում կանգնած, մենք հայացքով փնտրում ենք Արագածը: Իսկ Արագածը չի երևում: Թանձր մուժը պատել է նրան: Ու միայն ամպերից վեր գագաթներն են ճախրում: Կարծես արծաթե զանգակներ լինեն՝ կախված երկնքի կապույտ գմբեթից:

Գագաթներից ցած, ծովից 3200 մ. բարձրության վրա, երկնքի անսահման կապույտն իր մեջ առած, սառել-մնացել է լիճը: Ֆիզիկոսների կայանի ճիշտ դիմաց՝ լճի մյուս ափին քարեղեն կարկուտ է տեղացել: Դա Գյուրզառատ կոչվող սարն է, որն ուրվագծվում է Արագածի ստորոտին ու նրա հարևանությամբ փոքրիկ բլրակ է թվում:

Կայանից դուրս ենք գալիս առավոտյան ժամը 4-ին, տակավին լույսը չբացված: Ժամը 6-ին արևածագը դիմավորում ենք հարավային գագաթի վրա: Արագածն իր ողջ ահագնությամբ հառնում է մեր առաջ: Հառնում է անսպասելի, միանգամից: Դեռևս արևի լույսը չտեսած, իրենց գիշերային գույներով, արևածագի երկնքի վրա ծառացել են մյուս երեք գագաթները: Ձախ կողմում՝ արևմտյան կատարի ժայռերն առաջինն են դիմավորում արևի շողերը: Դիմացում՝ հյուսիսայինն է, ամենաբարձրը: Ամենաբարձրը ամբողջ Սովետական Հայաստանում՝ 4090 մ.: Իսկ աջ կողմը, արևելյանն է, ամենանուրբը իր ուրվանկարով: Ուղիղ նրա գլխին վառ կանաչ գույնով շողում է օգոստոսի արևը:

Մեր ոտքերի տակ գոգավորություն է: Արագած հրաբխային լեռան խառնարանը: Արևն արտացոլվում է հավերժական սառցադաշտի ալիքների վրա ու մի պահ թվում է, թե լույսով ողողված այդ մակերեսը ջրային է ու տարօրինակ ձևով սառել, մնացել է թեք լանջին: Խուսափելով սառցադաշտից, մենք կտրում ենք քարեղեն խառնարանը ու հասնում հյուսիսայինի լանջին: Մի քանի ժամ հետո մենք գագաթին ենք: Կարծես իսպառ մոռացվել են վերելքի դժվարությունները: Մեր ոտքերի տակ հյուսիսայինի հողմահարված սուրսայր «դանակներն» են: Մեր դիմաց՝ Արարատը, թարմ ու ջահել իր ծննդյան առաջին օրվա պես:

ՆՈՒՆՈՒՖԱՐ ՄԻՆԱՍՅԱՆ

ճարտարապետ

## ՏՈՄԱՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ




(Տևել է դեկտեմբերի 9-ից հունվարի 7-ը)

Հայոց տոմարի հինգերորդ ամիսն է: Անանիա Շիրակացին և Հովհաննես Իմաստասերը նշում են, որ Քաղոցը Հայկ Նահապետի որդիներից մեկի անունն էր: Ֆրանսիացի գիտնական Ե. Դյուլորիեն և հայագետ Ք. Պատկանյանը գտնում են, որ Քաղոց ամսանունը առաջացել է «քաղել» բայից: Հր. Աճառյանը և Ստ. Մալխասյանը այս բառը ստուգաբանում են որպես կենդանիների զուգավորության ամիս: Արդի գիտնականների մի մասը ավելի հավանական է համարում վերջին կարծիքը:

ՌԱՖԻԿ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Հավերի ոտքերի կոշտ կաշին մինչև այժմ ոչնչի համար պիտանի չէր համարվում: Բայց Շվեյցարիայի ձեռքի ժամացույցների գործարանատերերը գտան, որ ձեռքի ժամացույցների կապերի համար այն ամենալավ հումքն է:

Ենթադրում են, որ այդ նորույթը մի կողմից կավելացնի ժամացույցների իրացումը, իսկ մյուս կողմից կկրճատի կոկորդիլոսների և մողեսների որսը, որոնց կաշին վերջին ժամանակներս ավելի շատ էր որպես հումք օգտագործվում:

Ֆրանսիացի մեծ քիմիկոս և ֆիզիկոս Ժ. Գեյ-Լյուսակը (1778—1850 թթ.) քիմիական փորձերից մեկի ժամանակ զրկվեց մի աչքից: Մի անգամ նրան հանդիպեց Ֆրանսիայի ակադեմիայի «անմահների» շարքն անցած մի ինքնավստահ աստվածաբան-եպիսկոպոս:

— Չեմ հասկանում ինչպե՞ս կարելի է գիտնական լինել՝ ունենալով ընդամենը մեկ աչք: Ի՞նչ կարելի է տեսնել մեկ աչքով,— հարցրեց նա:

— Ձեզանից ավելի շատ,— չկորցրեց իրեն Գեյ-Լյուսակը,— ա՛յ, օրինակ, ես տեսնում եմ ձեր երկու աչքերը, իսկ դուք ընդամենը իմ մեկ աչքը:

Էներգետիկ ճգնաժամի վախը ստիպում է գյուտարարներին բնակելի և վարչական շենքերի ջեռուցման խնայողության համար անձնաանհավանական սիստեմներ մշակել: Անգամ այսպիսի...

Երկու օդաջեռուցիչներ միկրո ԷՀՄ-ի միջոցով միացված են շենքում տեղադրված միկրոֆոններին: Եթե այնտեղ գտնվում են մարդիկ և նրանք խոսում են, միկրոֆոնը ԷՀՄ-ի միջոցով միացնում է օդաջեռուցիչները, որը ապահովում է անհրաժեշտ ջերմաստիճանը: Հենց որ շենքը դատարկվի, 5 րոպե անց օդաջեռուցիչներից մեկը անջատվում, իսկ մյուսը անցնում է «պարապ» ռեժիմի: Բայց բավական է խոսել և ԷՀՄ-ն անմիջապես կմիացնի երկու օդաջեռուցիչները լրիվ կարողությամբ: Նոր սիստեմի փորձնական ստուգումը դպրոցներից մեկում ցույց տվեց, որ ձայնային կարգավորման միջոցով խնայվել է 30 % էներգիա: Ըստ ամենայնի, նման սիստեմը նպատակահարմար է կիրառել հիմնարկներում, դպրոցներում և այլ հասարակական շենքերում, բայց ոչ մասնավոր տներում:

Մոտ քսան տարի առաջ անգլիացի մի երիտասարդ՝ Ջեն Օուենը, հնդիկ ֆաքիրների մասին կարդալով, նամակ գրեց նրանցից մեկին:

Հետաքրքրասեր երիտասարդն ուզում էր

Պապը նկատելով, որ թզենու ճյուղը կոտրվել է, իր մոտ կանչեց թոռնիկին և հարցրեց.

— Արսե՛ն, այս ճյուղը ո՞վ է կոտրել:

— Ես չգիտեմ, պապի՛կ,— պատասխանեց Արսենը: Քիչ հետո պապիկը նորից հարցրեց.

— Արսեն, ի՞նչ ես արել, որ այս ճյուղը կոտրվել է:

— Թուզը պոկելիս ճյուղը ձգեցի և կոտրվեց,— պատասխանեց Արսենը:

● Արսենը հիվանդացել էր, չէր գնացել մանկապարտեզ: Երեկոյան զրնգաց հեռախոսը: Լսափողը վերցրեց Արսենը, լըսեց ու դարձավ քրոջը.

— Սուսա՛ն, Գոհարն ասում է, արի գնանք երեխաներին մանկապարտեզից բերենք:

— Արսե՛ն, դու չես գնացել մանկապարտեզ, գնա՞մ ու՞մ բերեմ,— պատասխանեց քույրը:

— Սուսանն ասում է. որ ես չեմ գնացել մանկապարտեզ,— պատասխանեց Արսենը Գոհարին:

Այս բոլորը իմ փոքրիկ եղբոր՝ Արսենի մասին է:

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ՌՈԶԱ
Ասկերանի շրջ., գ. Խրամորթ

իմանալ, թե ինչպես կարելի է մի քանի ժամ պառկել սուր մեխերի վրա և չվնասել մարմինը: Սկսվեց աշխույժ նամակագրություն, որը շարունակվում է մինչև այսօր: Միայն թե ուսուցչի և աշակերտի դերերը փոխվել են. Ջեն Օուենը պառկած մնալով մեխերի վրա 103 ժամ 23 րոպե, սահմանել է համաշխարհային ռեկորդ:




Սպորտային հետաքրքրությունը և էկզոտիկայի նկատմամբ սերը ստիպում են 45-ամյա պետական ծառայողին բավական ժամանակ հատկացնել օրինակ, ինքնատիպ, թեկուզև ոչ այնքան անվտանգ զբաղմունքին: Առայժմ նա մտադիր չէ թողնել իր հոբբին և անգամ ձգտում է գերազանցել իր իսկ ռեկորդը, հասցնելով այն մինչև 105 ժամվա:

Հնարավո՞ր է արդյոք, որ հավերը կանչեն աքաղաղների նման, իսկ աքաղաղները հավերի նման ձու ածեն: Որքան էլ անհավանական և տարօրինակ թվա, այսպիսի հակաբնական երևույթներ նկատվում են: Գիտությունը ոչ միայն հաստատել է աքաղաղների ձու ածելու փաստեր, այլև բազմաթիվ փորձերով ապացուցել, որ կարելի է արհեստական եղանակով աքաղաղներին դարձնել հավեր և, ընդհակառակը՝ հավերին աքաղաղներ:

Թռչունների սեռի փոփոխման դեպքեր հայտնի են վաղուց: Հավերն ու մայր բադերը երբեմն անսպասելիորեն զրկվում են փետուրներից, ձու ածելու ընդունակությունից և ձեռք են բերում աքաղաղի և արու բադի հատկություններ: Ամբողջ գաղտնիքը այն է, որ կենդանիների արական և իգական հատկությունների վրա ազդում են հորմոնները: Դրանք մշակվում են նրբին սեկրեցիայի ողոշ գեղձերի կողմից և եթե այդ գեղձերը հեռացվեն, ապա կենդանին կկորցնի իր սեռի բոլոր հատկանիշները:

ՎԱՐԴԱՆ ԽԱՉՈՅԱՆ

# ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՀՆԱԳՈՒՅՆ ԹՇՆԱՄԻՆ

Տարափոխիկ հիվանդությունները կըրկնահանցագործների նման լինում են՝ քիչ վտանգավոր, վտանգավոր, խիստ վըտանգավոր և այլն: Ժանտախտն ու խոլերան իրավացիորեն դասվում են հատուկ վտանգավոր վարակների շարքը և նրանց դեմ տարվում է միջազգային ծրագրված պայքար, որը սահմանված է միջպետական պայմանագրերով: Խոլերան մարդկության հնամենի և ճանաչված ոսոխն է, որն ամենայն մանրամասնությամբ հիշատակված է հնդկական տարեգրություններում դեռևս մեր թվարկությունից հինգ դար առաջ: Հիվանդության «օրրանը» Հնդկաստանի Գանգես և Բրահմանապուտրա գետերի մարդաշատ, բերրի հովիտներն են, որտեղ այդ վարակը տեղաճարակային է, քանի որ սրբազան գետերն էին նետում մահացածների դիակները և դրանով ակամա նպաստում հիվանդության տարածմանը:

Այդտեղ խոլերան հզորանալով, պարբերաբար դուրս էր գալիս իր բնական օջախից և քարավանների, ուխտավորների, ցամաքային, ջրային, իսկ այժմ նաև օդային ուղիներով տարածվում, առաջացնելով աշխարհատարած համաճարակներ:

Վերջին հարյուր հիսուն տարվա ընթացքում այն կատարեց յոթ հզոր արշավանք, ընդգրկելով բոլոր մայր ցամաքները և մարդկությունից խլեց հարյուր միլիոնից ավելի կյանք: Նա Ռուսաստան էր մտնում Կասպից ծովով, ապա Աստրախանից Վոլգայի վրայով հասնում էր մինչև Մոսկվա և Պետրոգրադ: Նախապաշարված ժողովուրդը դիմում էր «խոլերային բունտերի», ոչնչացնում նույնիսկ բուժաշխատողներին, որպեսզի փրկվի խոլերայից, որը համարում էին երկնային պատիժ:

Միայն անցյալ դարի վերջերին հայտնաբերեցին նրա չափազանց շարժուն և մտրակով օժտված ստորակետաձև հարուցիչ-մանրէն, որի սննդային պահանջը չափազանց աննշան է, իսկ բազմանալու հատկությունը՝ անսահման: Մանրէաբան Ռոբերտ Կոխի պատվին մանրէն կոչվեց Կոխի ստորակետ, երբեմն էլ այն անվանում են ասիական խոլերայի վիբրիոն: Հիվանդությունը տարածվում է կեղտոտ ձեռքերի, ճանճերի, վարակված սննդի, ջրի միջոցով: Վարակումից հետո մանրէն օրգանիզմում արագ զարգանում է, առաջացնելով ուժեղ թույն: Հիվանդության ծպտյալ շրջանը տևում է մի քանի ժամից մինչև 6 օր, ապա սկսվում են լուծ և անզուսպ փսխումներ, այդ պատճառով մարմինը զրկվում է կենսականորեն անհրաժեշտ ջրից և աղերից: Հիվանդությունն հաճախ ընդունում է կայծակնային ընթացք և շատ արագ վրա է հասնում անխուսափելի մահը:

Խոլերան կանխարգելելու համար հըսկողության տակ են առնվում սննդի և ջրամատակարարման օբյեկտները: Գերքլորացնում են խմելու ջուրը, ակտիվ կերպով հայտնաբերում և մեկուսացնում են հիվանդներին, ոչնչացնում են ճանճերը, կանխարգելման նպատակով կատարում են պատվաստումներ, օգտագործում են տետրացիկլին հակաբիոտիկը: Բայց այս ամենին զուգահեռ չպետք է աչքաթող արվի նաև ստուգված և մատչելի կանխարգելումը՝ դա անձնական հիգիենայի կանոնների պահպանումն է: Անհրաժեշտ է ձեռքերը, ինչպես և միջավայրը, պահել մաքուր, օգտվել ախտազրկված ջրից, սննդամթերքն, առանձնապես բանջարեղենը և մրգերը, օգտագործել հոսող ջրի տակ խնամքով լվալուց հետո, աղեստամոքսային խանգարումների ժամանակ անհապաղ դիմել բժշկին, անոթի չեղնել տնից և այլն: Հիշեցե՛ք, որ տարափոխիկ հիվանդությունները սովորաբար հանդիսանում են սանիտարական ցածր կուլտուրայի ուղեկիցները:

● Եթե չորս եղնիներից յուրաքանչյուրն ունի չորս մեծ ճյուղ, յուրաքանչյուր մեծ ճյուղն ունի չորս փոքր ճյուղ և ամեն մի փոքր ճյուղն էլ չորս տերև, ապա քանի՞ տերև կա եղնու վրա:

● Եթե ես ունեմ հավասար թվով քույրեր և եղբայրներ, բայց իմ քույրը ունի երկու անգամ քիչ քույր, քան եղբայր, ապա քանի՞ հոգի ենք մենք:

«ՊԻՈՆԵՐ» N 4-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

1. Ես՝ ինքս: 2. Իմ հայրը: 3. Այն ժամացույցը, որը չի աշխատում: 4. Չորս կատու: 5. Բրատնը 32 տարեկան է, եղբայրը՝ 34, քույրը՝ 38, մայրը՝ 52:

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց, № 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96, 56-43-38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

ԻՆԴԵՔՍ՝ 77806 ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.



ՌՈՒԲԵՆ ՂԵՎՈՆԴՅԱՆ. «ԵՐԱԶ»

Գլխավոր խմբագիր՝ **ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ**

**Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. (պատ. քարտուղար)**

**Գեղ. խմբագիր՝ Մ. ՔԵՉՕՂԼՅԱՆ, տեխ. խմբագիր՝ Ծ. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ, սրբագրիչ՝ Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

*Հանձնված է տպագրության 20.2.1984 թ.։ Ստորագրված է տպագրության 16.4.1984 թ.։ ՎՖ 10890։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ., 3,9 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 64032։ Պատ. 696։ Գինը՝ 15 կ.։*

*Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում. Օրջոնիկիձեի պողոտա 2։*

Сдано в набор 20.2.1984 г. Подписано к печати 16.4.1984 г. Формат 70×100 1/16. ВФ 10890. Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 64032. Заказ 696. Цена 15 коп. Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.